# ԼԵՎԻԿԻ ՈՏՔԸ ՑԱՎՈՒՄ Է

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ



Լևիկը 7 տարեկան էր։ Նա վերցրեց իր նոր պայուսակը և դպրոց գնաց։ Դասարանում ամեն ինչ մաքուր էր, ու նոր, փայլուն գրատախտակի մեջ երևում էր ամբողջ դասարանը, այնպես հստակ, որ եթե տախտակը չխանգարեր, կարելի էր ներս մտնել ու էլի մի դասարան ունենալ։

Լևիկը գիտեր, որ ինքը առաջին շարքի մեջտեղի նստարանին պիտի նստի։ Բայց դասատուն սկսեց երեխաների տեղերը նշանակել, և առաջին շարքի միջին նստարանին նստեցրին Զարիկին։

Լևիկին դա դուր չեկավ. Նա ուզում էր առաջ ինքը նստի այդ նստարանին, հետո՝ Զարիկը։ Հիմա արդեն ինքը պիտի գնար նստելու Զարիկի նստարանին, բայց այս ինչ է, Զարիկի կողքին Լևիկի փոխարեն նստեցրին Վաչիկին, իսկ Լևիկին նստեցրին վերջին շարքում, Սուրիկի կողքին։ Եվ դեռ առաջ Սուրիկին էին նստեցրել։ Բայց չէ՞ որ առաջին շարքի այդ նստարանը Լևիկի համար էին այդտեղ դրել. բոլորն էլ գիտեին, ինքն էլ գիտեր, բայց քանի որ նստարանը մեծ էր, թույլ էին տվել, որ Զարիկն էլ այնտեղ նստի։

Լևիկը այնպես վիրավորվեց, որ սկսեց լաց լինել։

— Ես չեմ արել,— իսկույն արդարացավ Սուրիկը։

— Ինչո՞ւ ես լաց լինում,— հարցրեց դասատուն։

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

№ 9 1958 թ.
ՍԵՊՏԵՄԲԵՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

— Ոտքս ցավում է...

Ու նա այնպես ուժեղ լաց եղավ, ինչպես լաց են լինում, երբ շատ քիչ է ցավում կամ բոլորովին չի ցավում։

— Վաչիկ, օգնիր ընկերոջդ և առաջին հա՛րկ, բժշկուհու մոտ տար,— ասաց դասատուն։

Վաչիկը գործնական մոտեցավ Լևիկին, նրա մի ձեռքը գցեց իր ուսին, մյուս ձեռքով գրկեց Լևիկի մեջքը ու հարցրեց.

— Ո՞ր ոտքդ է ցավում, Լևիկ։

Ա՛յ քեզ խայտառակություն... ինչպե՞ս Լևիկը նախապես չէր որոշել այդ։ Բայց ինչպե՞ս որոշեց, բա որ հանկարծ սխալվե՞ր։

Բոլոր երեխաները այնպես էին նայում Լևիկին, որ եթե նա սխալվեր, իսկույն սուտը կբռնեին։

Ո՞ր ոտքն է ցավում, երբ ոտքը իսկապես ցավում է։ Ավելի լավ է Լևիկը սկսեր կաղալ և ճիշտ կստացվեր։ Եվ Լևիկը սկսեց կաղալ։ Բայց ոչ մի կերպ չէր կարողանում որոշել, թե այդպես կաղալիս, ո՛ր ոտքն է ցավում։

Երբ Վաչիկի օգնությամբ նա դասարանից դուրս էր գնում, ձախ ոտքը, իսկապես որ, սկսեց ցավել, բայց երբ միջանցք դուրս եկան, չէր ցավում։

— Մի քիչ սպասիր,— ասաց Վաչիկը ու Լևիկի կողքի գրպանից մի կարմիր ու մեծ խնձոր հանեց, տեղափոխեց մյուս գրպանը,— խանգարում էր։

Մի քանի քայլ անելուց հետո, Վաչիկը հոգնեց ու անցավ Լևիկի մյուս կողմը։ Բայց իսկույն էլ կանգ առավ, գրպանից հանեց մեծ ու կարմիր խնձորը և նորից տեղափոխեց։

— Խանգարում է։

Լևիկը Վաչիկից ավելի բարձր էր, այնպես որ, ամբողջ մարմնով ընկնում էր Վաչիկի վրա։

Վաչիկը կռացել ու քայլում էր դժվարությամբ, իսկ ոտքի վրա գնդակի պես դուրս էր ցցվել խնձորը։

— Շատ է ցավում ոտքս,— ասաց Լևիկը։

— Հիմա կհասնենք, դեղ կքսեն, կանցնի։

— Որ դեղ քսեն, կցավի՞։

— Որ դեղ քսեն, էլ չի ցավի։

Վաչիկի խնձորը նորից տեղափոխվեց։

Խնձորը շատ մեծ էր, կարմիր ու փայլուն, ապակե գնդակի նման և խնձորի հոտ էր արձակում։



Դա շատ տարօրինակ խնձոր էր։ Լևիկը երբեք այդպիսի խնձոր չէր կերել, ոչ էլ տեսել էր։

— Ինչ մեծ խնձոր է,— ասաց Լևիկը։

— Շատ մեծ է,— համաձայնվեց Վաչիկը,— ես չգիտեի, որ այդքան մեծ էր։

— Իսկ կարելի՞ է այդքան մեծ խնձորը դպրոց բերել։

— Չգիտեմ,— ասաց Վաչիկը։

Երբ Վաչիկը մի անգամ էլ խնձորը հանեց գրպանից, երեխաները զարմացան. խնձորը ավելի մեծ էր, քան նրանք կարծում էին։ Եթե երկու մասի էլ բաժանեին, ամեն մի մասը մի խնձոր կլիներ։ Երբ նրանք ատաքճաններին հասան, Լևիկն ասաց.

— Եկ չգնանք բժշկուհու մոտ, ատամս էլ շատ չի ցավում։

— Բայց դասատուն ասաց, որ գնանք։

— Ճիշտ է,— համաձայնվեց Լևիկը,— բայց որ մի քիչ հետո էլ ատամս չցավի, ինչպե՞ս գնանք բժշկուհու մոտ։

— Այն ժամանակ շուտ-շուտ գնանք, քանի դեռ ցավը չի անցել։

— Բայց ինչպե՞ս շուտ-շուտ գնանք... չէ՞ որ ատամս ցավում է։

— Այն ժամանակ մի քիչ սպասենք, թող ցավն անցնի։

Նրանք կանգ առան ատաքճանների մոտ, Վաչիկը ձեռքով սրբեց քրտնած ճակատն ու գլուխը, որից նրա կարճ խուզած մազերը խոզերի պես ցցվեցին։ Հետո նա հենվեց ատաքճանի ճաղերին, գրպանից հանեց խնձորն ու գնդակի պես սկսեց վեր-վեր նետել։ Հանկարծ, ինչքան կարող էր, բաց արեց բերանը, ու այն է, պիտի կծեր խնձորը, բայց կարողացավ իրեն զսպել։

— Ես չեմ ուտի, ատամս ցավում է,— փնթփնթաց Լևիկը։

— Մի անգամ ես կկծեմ, մի անգամ՝ դու։

— Որ ուտեմ, ատամիս ցավը կանցնի՞...

— Իհա՛րկե։

Իսկապես որ, դա ամենամեծ խնձորն էր։

Տղաները ինչքան որ ուտո՛ւմ էին, չէր վերջանում։ Նույնիսկ, երբ արդեն խնձորից մի քիչ կերել էին, տեսան, որ ավելի շատ խնձոր էր մնացել, քան այն ժամանակ, երբ բոլորովին չէին կերել։

Հետո նրանք արագ ցած իջան, բժշկուհուն ասացին, որ Լևիկի ատամն էլ չի ցավում, և վազելով վերադարձան դասարան։

# ՄԵՆՔ ՔԵԶ ԵՆՔ ԳԱԼԻՍ ՀԱՐԱԶԱՏ ԴՊՐՈՑ

Մ. ԿՈՐՅՈՒՆ

*Թողած ծաղկազարդ լեռները հայոց,*
*Լույս առավոտները անուշ ղողանջով,*
*Մենք քեզ ենք գալիս, հարազատ դպրոց,*
*Կարոտած սրտի երգով ու կանչով։*

*Ինչե՞ր չարեցինք բնության գրկում,*
*Զով ճամբարներում ինչե՞ր չտեսանք,*
*Մտանք խորախոր ձորերը գնդով,*
*Եվ սեգ լեռների կատարը հասանք։*

*Ուժ ամբարեցինք վառ արևից մեր,*
*Եվ ջրվեժներից հորդ ու սանձակոծ,*
*Մեր սիրտն ենք բերել քեզ համար նվեր,*
*Հարազատ մեր մայր, հայրենի դպրոց։*

*Որ պողպատի պես քո հրով թրծես,*
*Կռես ու կոփես մեր սիրտն ու հոգին,*
*Ու անհուն սիրով նվիրես դու մեզ*
*Մեր անպարտելի, մեծ Հայրենիքին։*




# ՄԱՐԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ



Երեխանե՛ր, դուք ոչինչ չգիտեք Մարկ Ստեփանյանի մասին, առաջին անգամ եք կարդում նրա անունը, բայց նա այն կոմերիտական հերոսներից է, որոնք ընկան Հայրենական Մեծ պատերազմի առաջին սահմանագծին: Ուրիշ շատ սահմանապահների հետ, Հայաստանի Կոմերիտմիության սան Մարկ Ստեփանյանը պատերազմի հենց առաջին օրը խիզախորեն դիմադրեց հիտլերյան ուխտադրուժ հորդաներին՝ մեր երկրի արևմտյան սահմաններում: Բայց Մարկ Ստեփանյանի միայն անունն է հայտնի: Հայաստանի ո՞ր քաղաքից, ո՞ր գյուղից էր նա, ո՞ր դպրոցում, ո՞ր պիոներական դրուժինայում էր դաստիարակվել այդ անվեհեր կոմերիտականը՝ հայտնի չէ: Այս հոդվածում Վլադիմիր Բելյաևը՝ ձեզ լավ ծանոթ «Հին ամրոցը» գրքի հեղինակը, պատմում է նրա քաջագործությունների, նրա հերոսական մահվան մասին: Կարդացե՛ք, երեխաներ, և ձեր շրջապատում հետաքրքրվե՛ք, գուցե ապրում են նրա ծնողներն ու հարազատները: Եթե ձեզ կհաջողվի Ստեփանյանի մասին լրացուցիչ տեղեկություններ ձեռք բերել, ուղարկեցեք մեզ, մենք այդ նյութերը կհասցնենք Վլադիմիր Բելյաևին, որն ուզում է նրա մասին գիրք գրել:

Ձեզ օգնելու համար ասենք, որ գուցե ոչ թե նրա անունը Մարկ է եղել, ինչպես ռուսերենում ընդունված է ասել ու գրել, այլ՝ Մարկոս: Երկու դեպքում էլ ճիշտ կլինի:

ՎԼԱԴԻՄԻՐ ԲԵԼՅԱԵՎ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Մեր սահմանապահ ուղեկալների համառ դիմադրությունը խանգարեց հիտլերականներին, որպեսզի նրանք 1941 թվականի հունիսի 22-ին միանգամից գրավեն Ռավա-Ռուսկայա քաղաքը և հնարավորություն տվեց Սովետական Բանակի զորամասերին ոչ միայն պաշտպանական դիրք բռնելու, այլև անցնելու հակագրոհի: Հունիսի 22-ի երկրորդ կեսին Սովետական Բանակի հրաձգային դիվիզիայի ստորաբաժանումները հակագրոհով հարձակվեցին ֆաշիստների վրա, որոնք մտել էին սովետական հողը, և նրանց դուրս շպրտեցին մեր սահմանից: Իսկ Տոմաշովի ուղղությամբ հիտլերականներին ավելի հեռու քշեցին, մինչև Դրեբենյա և Բելզեց: Հեծյալների և հետևակների հետ միասին կռվում էին նաև սովետական սահմանապահները: Բայց այդ հակահարվածը չզարգացավ, որովհետև ֆաշիստական զորքերը աջից ու ձախից խորացել էին սովետական տերիտորիայի մեջ: Հունիսի 25-ին հիտլերականները նորից գրոհեցին Ռավա-Ռուսկայայի վրա, որը Լվովի ճանապարհին շատ կարևոր ստրատեգիական կետ էր: Կապիտան Պրիխնոյի ղեկավարությամբ՝ երկու հարյուր սահմանապահներ ամբողջ ուժով պաշտպանում էին Ռավա-Ռուսկայայի հյուսիսային ծայրամասը, իսկ քաղաքի արևմտյան ծայրամասը պաշտպանում էր սահմանապահների մի խումբ, որոնց հրամանատարությունը ստանձնել էր կրտսեր լեյտենանտ Մարկ Ստեփանյանը:*

*Մինչև պատերազմի սկիզբը, նա Ռավա-Ռուսկայայի սահմանապահ ջոկատի զինկոմի տեղակալն*

էր՝ կոմերիտմիության գծով։ Հայաստանի կոմերիտ-միության կողմից մեր երկրի արևմտյան սահմանները ուղարկված Մարկ Ստեփանյանը կարճ ժամանակամիջոցում դարձավ ամբողջ ջոկատի սիրելին։ Այդ աշխույժ, տաքարյուն, հնարագետ տղան շուտով դարձավ նաև Ռավա-Ռուսկայա քաղաքի սիրելին։ Բավական էր, որ Մարկը հայտնվեր քաղաքի հրապարակում կամ ակումբում, իսկույն նրա շուրջը մի անզուսպ ուրախություն կսկսվեր. կսկսեին երգել ու պարել։ Այն ժամանակ, երբ դեռ պատերազմը չէր սկսվել, ո՛չ ոքի մտքով չէր անցնի, թե այդ՝ լավ հարթուկած հագուստով, սևաչյա, կատակասեր պատանին կարող է այդքան լավ հրամանատար դառնալ։

* * *

...Մարկ Ստեփանյանի խումբը հիտլերականների հետ կռվի բռնվեց Ռեֆորմատորական վանքի ետևում գտնվող տարեկանի արտում։ Սովետական սահմանապահները չսպասեցին՝ մինչև ֆաշիստները մոտենան. նրանք նախաձեռնությունն իրենց ձեռքում վերցրեցին և անցան հարձակման։ Նրանք գերմանացիներին քշեցին դեպի արևմուտք, դեպի անտառները։ Մարկ Ստեփանյանն առջևից էր վազում և իր օրինակով ոգևորում մարտիկներին։ Այդ օրը սահմանապահների փոքրիկ խումբը թշնամուն հինգ կիլոմետր ետ քշեց սովետական հողից։ Կատաղած ֆաշիստները մութն ընկնելուն պես՝ թնդանոթներից ու ականանետներից կրակ բացեցին Ռավա-Ռուսկայայի վրա։

— Ինչքան էլ որ լինեն գերմանացիները, մենք նրանց չենք թողնի, որ Ռավա-Ռուսկայային մոտենան,— հաղորդեց իր ընկերներին Մարկը, որը միանգամայն լրջացել ու խստացել էր, դարձել իսկական հրամանատար, կարծես թե այլևս այն ուրախ, ծիծաղկուն երիտասարդը չլիներ։

Այդ դժվարին գիշերվա ընթացքում ստեփանյանականները երեք անգամ ետ շպրտեցին Ռավա-Ռուսկայա խցկվող ֆաշիստներին։

Լուսադեմին, երբ արշալույսի վարդագույն շերտը տարածվեց դեպի Լեհաստան ձգվող անտառների վրա, հիտլերականները մի անգամ էլ փորձեցին խցկվել քաղաքի արվարձանները, բայց նորից ջախջախված ու խայտառակ կերպով ետ նահանջեցին։ Այնուհետև սահմանապահները հետևեցին փախչող թշնամուն։ Մարկ Ստեփանյանը վազում էր առջևից և իր օրինակով ոգևորում բոլորին, բայց վանքի պատի մոտ, տարեկանի արտում նրան թշնամու ավտոմատի հերթը ցած գցեց։ Նա ընկավ զինվորի փառավոր մահով, իր արյունոտ կրծքով ներկելով տարեկանի հասկերը։ Նա ընկավ՝ պաշտպանելով Ուկրաինայի հինավուրց հողը, նրա հին քաղաքներից մեկը՝ Լվովը, որտեղ դեռևս 13-րդ դարում ապաստան էին գտել սելջուկների սրից փախած հազարավոր հայեր։



1941 թվականի հունիսի 26-ին, Ռավա-Ռուսկայայի ծայրամասում, արդեն մոտերքից լսվող հրանոթային համազարկերի դղրդյունի տակ, քաղաքի կանաչ գլխարկավոր պաշտպանները թաղեցին Հայաստանի փառապանծ որդի Մարկ Ստեփանյանին, որը հերոսի մահով ընկավ պատերազմի առաջին բնագծի վրա։

Սովետական ժողովուրդը գերմանական զավթիչների դեմ մղվող արյունահեղ մարտերի ժամանակ շատ երգեր է հորինել, որոնցով փառաբանել է մեր Հայրենիքի պաշտպաններին։ Գուցե և ամենահին երգը եղել է Մարկ Ստեփանյանին նվիրված երգը, որ հորինել էին նրա մարտական ընկերները՝ սահմանապահները։ Այդ երգում նրանք արտահայտել են իրենց խոր սերը դեպի զոհված հրամանատարը։ Այդ երգը ստեղծվել է Հայրենական պատերազմի հինգերորդ օրը։

Սիրելի ընկեր, մենք կհիշենք քեզ միշտ,
Հավիտյան քեզ չենք մոռանա.
Թշնամին կընկնի, կջախջախվի ընդմիշտ,
Քեզ համար պատասխան կտա նա։

Քո կյանքի համար մենք վրեժ կլուծենք,
Երդվում ենք բոլորի առաջ,
Որ կռվում համարձակ ու անվախ կլինենք,
Կլինենք նվիրված ու քաջ։

Երգե՛նք, ընկերներ, թող թռչի երգը մեր
Ու հասնի երջանիկ մեր վաղվան,
Թող անցնի դաշտերով, այն՝ հասուն արտերով,
Որտեղ քաջ Ստեփանյանն է թաղված։

Եվ երգը թռավ Ուկրաինայի ստեպներով։ Նա ուղեկցում էր կանաչ գլխարկավոր մարտիկներին, որոնք ցավը սրտներում՝ թողեցին հարազատ բնագծերը։ Այդ երգը երգում էին Յասսովոյում, Ումանում և Օստյորի տակ։

Ես այդ երգը, որ պատերազմի հինգերորդ օրն էր ստեղծվել, լսեցի պատերազմից հետո, Արևմտյան Բուգի մոտ գտնվող սահմանապահ ուղեկալներից մեկում։ Սոխակները փեղփեղում էին Բուգի ուռուտներում, կարմրին էին տալիս Լվով-Վոլինսկյան նոր ածխահանքերի սուտակե աստղերը, իսկ սահմանային ուղեկալի բակում, յասամանի ծառի տակ նստել էր մի երիտասարդ սահմանապահ և նվագելով գարմոշկայի վրա, երգում էր պարզ ու սրտառուչ այդ երգը հայ կոմերիտական Ստեփանյանի մասին։ Ես լսում էի խոսքերը այն երգի, որ եկել էր 1941 թվականի այրվող սահմաններից, և մտածում, որ կգա ժամանակ, երբ Հայաստանի գրողները և կոմպոզիտորները նոր երգեր կգրեն իրենց քաջ հայրենակցի մասին։





Ի. ԲՐՈԴՍԿԻ — Բաքվի 26 կոմիսարների գնդակահարությունը

Ախչա-Կույմայի ավազուտներ... Կանգնած են կոմիսարները: Նրանց ուժը, կամքը երևում է նրանց սեղմված բռունցքներում, նրանց աչքերում, որ կարծես վրեժի կայծեր են արձակում և պիտի այրեն, մոխրացնեն թշնամիներին:

Կանգնած են նրանք աննկուն և աներեր: «Մենք մեռնո՛ւմ ենք կոմունիզմի համար: Կեցցե՛ կոմունիզմը» — կարծես թե հասնում են այս խոսքերը դիտողի ականջին...

Անգլիական իմպերիալիստների ու նրանց վարձկանների սառը փողերը, որ ուղղված են հերոսների վրա, անկարող են կոտրել նրանց հավատը ապագայի նկատմամբ: Այս ամենը դուք տեսնում եք սովետական գեղանկարիչ Բրոդսկու կտավի վրա:

26 կոմիսարներ...

Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակի լուրը ալեկոծեց ամբողջ Ռուսաստանը: 1917 թվականի նոյեմբերի 15-ին պրոլետարները Բաքվում նույնպես հաշակեցին սովետական իշխանություն, իսկ 1918 թվականի ապրիլ ամսին կազմըվեց Բաքվի ժողովրդական կոմիսարների Սովետը, որի նախագահն էր Լենինի աշակերտ Ստեփան Շահումյանը:

Սարսափած թշնամիները նոր ուժեր հավաքեցին և բոլոր կողմերից գրոհներ սկսեցին: Բաքվի վրա էին հարձակվում մուսաֆաթականները, գերմանական և թուրքական զորքերը, իսկ Իրանից՝ անգլիացիները:

«Կամ հաղթել, կամ մեռնել պատվով» — այսպիսի խոսքերով էին կռվի գնում Բաքվի պաշտպանները:

Թշնամու գերակշիռ ուժերի ճնշման տակ՝ Բաքվի կոմունան ժամանակավորապես ընկավ, 26 կոմիսարները ձերբակալվեցին:

Երբ թուրքական զավթիչները մտան Բաքու, կոմիսարները նըստեցին «Թուրքմեն» նավը՝ Աստրախան մեկնելու համար:

Բայց դավաճաններն ու լրտեսները քնած չէին: Նրանք ճանաչեցին Շահումյանին ու նրա ընկերներին, նավի ընթացքը շուռ տվին դեպի Կրասնովոդսկ:

Եվ 40 տարի առաջ, 1918 թվականի սեպտեմբերի 20-ին թըշնամիները գնդակահարեցին Բաքվի 26 կոմիսարներին՝ Ախչա-Կույմայի ավազուտներում:

Ընկան 26 կոմիսարները, բայց նրանց գործը հաղթանակեց:

# Քսանվեց էին...

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Քսանվեց էին...
Նրանք ամենքն էլ՝ ջահել ու եռուն,
Նրանք ամենքն էլ՝ նորաշունչ գարուն—
Փնջած մեխակներ—Քսանվեց ընկեր:

Կռիվ էր զարկել
Անգղների դեմ Քսանվեցն այն,
Եվ անհավասար ու դյուցազնական
Այն մեծ կռվի մեջ նա գերի ընկել:

Ու մի առավոտ,
Երբ աստղերը կաթ դեռ չէին հանգել՝
Ախչա-Կույմայի դաշտում ավազոտ
Վեհ Քսանվեցին բերին կրակել...

Երկու-երկու շարք
Արձանի նման կանգնել են նրանք,
Գունատ ու հպարտ, լուռ են, չեն խոսում,
Արհամարհանքով մահին սպասում...

—Կացե՛ք մի վայրկյան,—
Հանկարծ որոտաց սև դահիճներին
Ընկերն Շահումյան.—
Երջանիկ ենք մենք, որ հիմա կընկնենք
Երազած մահով՝ ջահել ու վայել
Կոմունարների.
Բայց լա՛վ իմացեք, որ հենց իսկ վաղը
Սպասում է ձեզ խայտառակ մահը—
Վայել շներին...

—Մենք այդ լավ գիտենք...
Երերաց մի ձայն... Ու չանցավ վայրկյան՝
Գնդացիրներից Քսանվեցն այն
Հնձած արտի պես կողք-կողքի ընկան...

Գնացքը ետ գնաց...
Մինչ Քսանվեցը իրարու գրկած՝
Ախչա-Կույմայի ավազոտ փոսում
Ամեն լուսածեգ կոմունարների
Հիմնն են երգում...





# ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ԱՆՄԱՀՈՒԹՅՈՒՆԸ

ՎԻԿՏՈՐ ԳՈՒՍԵՎ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ես արթնացա Աշխաբադի ճանապարհին:
Լռություն է: Տներ: Փոքրիկ մի կայարան:
Անամպ երկինք: Ավազներն է ավլում քամին:
Ախչա-Կույմա՝ ասաց կողքից մի հարևան:
Ես դուրս թռա: Հուզմունքը իմ էլ չեմ զսպում:
Քամին խաղում է այտերիս, ձեռքերիս հետ:
Վշտի սավերն, ամենախիտ ստվերն իջնում
Ու ծածկում է երկինք, բարխան ու արահետ:
Այստեղից եք տառապելով անցել
Ու հիշել եք որդիներին ձեր հեռավոր.
Այստեղ են ձեզ ինտերվենտները գնդակել,
Անմահացել եք ուր մահով մի փառավոր:
Ախչա-Կույմա՝ ավազուտներ Թուրքմենիայի:
Մեր գնացքը կանգնեց միայն երկու րոպե:
Երբեք կյանքում ես չեմ տեսել Շահումյանին,
Եվ չեմ սեղմել Ալյոշայի ձեռքը երբեք,
Անծանոթ եմ եղել Վանյա Ֆիոլետովին,
Մաշադիին, որ չգիտեր ահ ու սարսափ.
Բոլոր նրանց, որոնք հանուն Սովետների
Ընկան այստեղ, ավազներում Ախչա-Կույմյան:
Ես եղել եմ նրանց որդոց հասակակից,
Հուզել է ինձ նրանց կերպարը միշտ կյանքում.
Միշտ կենդանի, միշտ հարազատ ու սրտակից —
Նրանց անունն եմ ես լսել երգ ու ասքում:
Անտառներում և ափերում լուրթ օվկիանի
Ժողովուրդը նրանց մասին երգ է երգում.
Եվ փողոցում պայծառանուն Շահումյանի
Տանկիստներն ու ծովայիններն են բնակվում:

Զինվորները իրենց դժվար ճանապարհին
Միշտ հիշում են խիզախությունն անմահների:
Մանուկները չիմանալով նրանց մասին՝
Խաղում են զով զբոսայգում Քսանվեցի:
Ելի՛ր, երկիր, պահակ կանգնիր դու պատվավոր:
Նայիր հեռուն ձգվող ծովին ավազների:
Ինչպիսի՜ բիրտ դահիճներ են հրեշավոր
Գնդակ ուղղել վեհ սրտերին որդիներիդ:
Այս՛, ապրում, ապրում են մեր խիտ շարքերում
Քսանվեց հերոս կոմիսարները նահատակ.
Նրանց վրա դրոշներն են վառ փողփողում,
Քամին սուրում, տարիներն են անցնում արագ:
Երգ են հյուսում երգիչները նրանց մասին,
Զահելներն են նրանց կյանքով հպարտանում,
Ինչպես ծարավ մարդն է հասնում պաղ աղբյուրին,
Այնպես նրանց արիությանն են մոտենում:
Նրանք մեզ հետ, մեր մեջ են, և մահը երբեք
Չի՛ ջնջելու հետքը նրանց պայծառ կյանքի.
Այդպես է միշտ կոփում ջահել սերունդը մեր
Պատմությունը պայքարի և հաղթանակի:
Անտառներում և ափերում լուրթ օվկիանի
Նրանց հզոր կերպարներն են հավերժ ապրում:
Եվ փողոցում պայծառանուն Շահումյանի
Տանկիստները Զապաևին են գովերգում:
Զինվորները իրենց դժվար ճանապարհին
Միշտ հիշում են խիզախությունն անմահների:
Մանուկները չիմանալով նրանց մասին,
Խաղում են զով զբոսայգում Քսանվեցի:




# ՉԱՐՈՑ ԼԵՌԱՆ ԼԱՆՋԻՆ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Ամառային արձակուրդների ժամանակ էր։ Մի օր Խոստիկը վազելով ներս ընկավ ու ասաց.

— Աչքդ լույս, Մակար, մայրիկդ արդեն համաձայնվել է. վաղը միասին մեկնելու ենք։

Մակարը, որ արդեն երազում էր ճանապարհորդության մասին, ժպտաց ու շփեց ձեռքերը։

— Խոստիկ, ուրեմն ասում ես, որ նրանք ինձ ճանաչո՞ւմ են։

— Հարյուր տոկոսով։ Չէ՞ որ նրանք «Պիոներ» ամսագիր են ստանում. բացի այդ, ես գրել եմ նամակում, որ ընկերոջս հետ երեք օրով գյուղ եմ գնալու։

Մակարը մռայլվեց.

— Ով գիտի՝ հիմա էլի ինչեր ես գրել իմ մասին...

— Երդվում եմ, ոչինչ չեմ գրել։ Միայն վախենում եմ, որ այնտեղ հանկարծ...

— Ի՞նչ։

— Խայտառակ չանես...

— Այսի՞նքն։

— Ես ուզում եմ, որ մենք այնտեղ ցույց տանք մեր քաջությունն ու անվախությունը։

— Եթե պահանջվի, մենք ամենից քաջ ենք ու անվախ,— զգաստ կանգնելով կրկնեց Մակարը։

— Դե, բարեկամս, հավաքիր ինչ ունես-չունես...

Մյուս օրը վաղ առավոտյան Մակարն ու Խոստիկը՝ երկու մեծ ճամպրուկները ձեռքերին, ճանապարհ ընկան։ Ավտոմեքենան կանգ առավ գյուղի ծայրին։ Նրանց դիմավորելու էին եկել Խոստիկի մորաքրոջ տղան, Իշխանը և նրա ընկերները՝ Միքայելն ու Հարությունը։

— Ոչ մի արտասովոր բան էլ չկա. շատ սովորական տղաներ են։ Ոնց էր փչում Իշխանը. «հետաքրքիր», «արկածախնդիր», «ծիծաղելի» և չգիտեմ էլի ինչ ու ինչ...— ընկերոջ ականջին փսփսաց Միքայելը։

Խոստիկն խուլույն աչքով արեց Մակարին։

— Շող է,— ասաց նա ու քաշեց ձախ ականջը։

Նույնը կրկնեց Մակարը։

Նրանց գլուխները ծածկող լայնեզր գլխարկներն սկսեցին բարձրանալ վեր։ Բարձրացան, բարձրացան մի մետրի չափ ու գլխավերևում կանգնեցին։

Տղաները հետաքրքրությամբ նայում էին բարակ երկաթալարերի ծայրերին ճոճվող գլխարկներին։ Իշխանենց տունը գտնվում էր Չարոց լեռան լանջին։ Երբ հասան տուն, Խոստիկը քաշեց աջ ականջը, նույնը կրկնեց Մակարը. գլխարկներն իրենք իրենց սկսեցին ցած իջնել։

Մյուս օրը Հարությունն ու Միքայելն շտապեցին Իշխանենց տուն և միասին դուրս եկան զբոսանքի։ Խոստիկն անվերջ պատմում էր իրենց արկածներից, իսկ Մակարն՝ իրեն յուրահատուկ համեստությամբ, հաստատում էր նրա ասածները։

Երեկոյան բաժանվելիս Միքայելն ասաց.

— Այնուամենայնիվ, ես նույնպես կարող եմ անել այն, ինչ դուք եք արել...

Երբ Միքայելն ու Հարությունը հեռացան, Իշխանն ասաց.

— Ստում է, նա շատ վախկոտ է...

Խոստիկը լայն բացեց աչքերն ու ինքնիրեն ասաց. «Լա՜վ»։

Գիշերը, երբ տանեցիները բոլորը քնած էին, Խոստիկն ու Իշխանը փսփսում էին։ Իսկ երբ մահճակալի տակից դուրս քաշեցին ճամպրուկները և շրխկ-թրխկոցով սկսեցին ինչ-որ բաներ հանել, Մակարն արթնացավ։

— Ո՞ւր, հարձակմա՞ն,— աչքերը տրորելով ասաց Մակարը։

— Այո՛,— կարճ պատասխանեց Խոստիկը։

Մակարը դուրս թռավ անկողնուց ու սկսեց հագնել ճամպրուկից դուրս քաշած տարօրինակ զգեստները։

Կես գիշերն անց էր, երբ Իշխանը, Մակարն ու Խոստիկը իրար ետևից ներս սողոսկեցին Միքայելենց տուն։

Աղմուկից Միքայելը արթնացավ, բայց նրան թվաց, որ դեռ երազում է, Խոստիկի պատմած արկածների տպավորությունների տակ և նորից քնեց... Ահա շներ լծված սայլակները, անտառ, որսորդություն... հրդեհ, գայլեր... սավանավոր մարդը նորից հրում է իր կողը...

Միքայելը բացեց աչքերը։

...Նրա գլխավերևում պարզված սրերը մթության մեջ փայլփլեցին։ Զինված մարդկանց դեմ-

բերը ծածկված էին գրաֆներով: Միքայելը ճչաց ու աշխատեց ձեռքով հետ հրել մեկին:

Ո՞վ ես ա՛...

— Մի՛ վախենա, ես Դոն-Կիխոտի թոռ Դոն-Դոնն եմ:

— Ի-ի՞նչ, ն՜ոոո... կմկմաց Միքայելն ու սկսեց երեխայի նման բարձրաձայն լալ:

Իշխանն իսկույն դուրս եկավ ու փաթաթվեց ընկերոջը: Միքայելն ազատ շունչ քաշեց, բայց ամոթից գլուխը վերմակի տակ թաքցրեց: Իսկ վաղ առավոտյան վազեց Հարությունի մոտ ու ասաց.

— Ինչ որ պատմում էր Խոստիկը, բոլորն էլ ճիշտ են:

Տեսա՞ր, գիշերային «հարձակման» մասին լսելուց հետո, ասաց Հարությունը, որ սառո՜ւմ էր...

Հաջորդ օրը, գյուղի երեխաներից շատերը լսելով Երկար Մակարի ու Պստիկ Խոստիկի մասին, հավաքվել էին նրանց տանը:

...Երկնքում լողում էր լիալուսինը, իսկ ներքևում բորբոքվում էր տղաների երևակայությունը: Նրանք բարձրացել էին Զարոց լեռան գագաթին և ոգևորված աչքերով նայում էին Խոստիկին ու ամեն մեկն իր սրտի խորքում նախանձում էր նրան:

Իշխանը՝ հպարտ իր բարեկամի փառքով, երևի ցանկանում էր ապացուցել, որ նրա քաջությունը ժառանգական է:

— Գյուղում ո՛չ ոք չի համարձակվել գիշերը այս կողմ անցնել և Զարոց լեռան լանջը բարձրանալ,— պատմում էր Իշխանը:— Մարդիկ ասել են, որ այս լեռան ծոցում է ապրում չարքերի հսկան, իբրև երբ նա մռնչում է՝ վո՜ւ, վո՜ւ — ողջ լեռը դղրդում է երկրաշարժի նման. ցնցվում են քարերը ու ժայռերը, և լեռը շարժվում է... Իմ պապը չի հավատացել, չի վախեցել և առաջինն ինքն է տուն շինել այս լեռան լանջին...

Իշխանը դեռ շարունակում էր պատմել, իսկ տղաները քարերի ու թփերի վրա նստած, պլշած աչքերով նայում էին և ունկնդրում լեռն ի վար վազող գետակի խուլ վշշոցը:

Այդ պահին Խոստիկը կարծես ցանկացավ ոտքի կանգնել, բայց դեռ կռացած ինչ-որ անկապ բառեր շշնջաց ու գլորվեց դեպի ցած.

— Կատակ է, — ծուլորեն տեղից բարձրանալով ասաց Մակարը:



Բայց Խաստիկը լիքը պարկի նման քարերին բախվելով, գլորվում էր ու գլորվում...

Տղաները վազեցին:

Խաստիկը պառկած էր լուռ ու գունատ, նրա կիսաբաց թարթիչների տակից երևում էին անշարժ բիբերը:

Տղաները վախեցած գլխի ընկան, որ դա կատակ չի:

Մակարը վազեց ջուր բերելու, իսկ մյուսները սկսեցին քանդել կոճակները:

Լեռը շարժվում է,— հազիվ ուշքի գալով շշնջաց Խաստիկն ու նորից փակեց աչքերը:

Տղաները նորից սկսեցին քաշքշել, ջուր լցնել երեսին:

Լեռը շարժվում է,— մի փոքր ձայնը բարձրացնելով կրկնեց Խաստիկը և նորից ընկավ:

Մի կերպ նորից ուշքի բերեցին:

Լեռը շարժվում է,— երրորդ անգամ կրկնեց Խաստիկը և ուզում էր նորից ընկնել, բայց այս անգամ ընկերներին հաջողվեց նրան լրիվ ուշքի բերել:

Լեռը չի շարժվում, լեռը չի շարժվում,— կրկնում էին այս ու այն կողմից:

Ա՜յ, այնտեղ,— Խաստիկը մատը մեկնեց դեպի իր նստած տեղը: Երեխաները կանաչները տրորելով սկսեցին շոշափել:

- Կրիա՜, կրիա՜ գտա,— բացականչեց Հարությունը, գետնից վերցնելով մի անշարժ կրիա:

Խաստիկը մի պահ կուչ եկավ ու ասաց.

Ես նստել էի այդ...

Ահա՛ թե ի՞նչ, Խաստիկը նստել էր կրիայի վրա...

— Տեսնո՞ւմ ես, տեսնո՞ւմ ես,— սկսեց գոռգոռալ Մակարը,— տեսնո՞ւմ ես, որ-իմ ընկերը ճիշտ է ուշագնաց եղել, այնուամենայնիվ. լեռը շարժվել է...

Քիչ անց՝ նրանք իջնում էին Զարոց լեռան լանջով: Խաստիկը լուռ էր ու տխուր: Նա չէր մասնակցում տղաների խոսակցությանը: Նրան թվում էր, թե իր փառքը մնացել էր լեռան գագաթին:



# ՄԻ ՊԻՈՆԵՐԻ

Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Դու քայլում ես այնպես վստահ,
Այնպես զվարթ. առույգ.
Որ կյանքն, ասես. քո կրծքի տակ
Վառվում է. ինչ խարույկ:

Եվ վզկապդ այդ խարույկի
Բոցն է ասես անմար,
Որի ծայրերը քո կրծքին
Ջերմ դրվել են իրար:

Ու հասակդ բոյն այդ սիրուն
Այնպես է քեզ ձուլվել,
Որ թվում է, թե աշխարհում
Միասին եք ծնվել...

Սակայն այնպե՛ս եղիր, տղաս, .
Գործով այնպես պայծառ,
Որ թե վզկա՛պդ էլ չունենաս՝
Քեզ ճանաչեն դարձյալ:

# ՉԻ՞ ԼԻ՞ՆԻ ՉԳԱ ԱՆՁՐԵՎԸ ԱՅԴ ԳԻԺ

Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ

— Վա՜յ, տատի՛կ, նորից անձրև է կաթում,
Տե՛ս, ինչպես թրջեց մեր բակը մաքուր,
Հիմա էլ որտե՞ղ գնդակ խաղամ քիչ,
Չի՞ լինի չգա անձրևը այդ գիժ:

— Ինչպես ես ասում, տատը քեզ մատաղ,
Կարծես թե պայծառ օրերը հատան.
Գնդակ կխաղաս. ի՞նչ ես տրտնջում,
Սարում կանաչն է մնացել անջուր,
Ծաղիկն ու թուփն են ծարավ մնացել,
Արտում հասկը, որ նոր է բարձրացել,
Սիրուն անտառը՝ լեռների լանջին.
Կարոտ է ջրի զովացնող շնչին,
Որ անձրև չգա, ամռան արևը
Կխանձի, այրի ծիլն ու տերևը:

# ՓՈՔՐԻԿ շախմատիստը



Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Դպրոցից վերադառնալիս՝ Դիմայի ուշադրությունը գրավեց խոշորատառ մի աֆիշ. «Այսօր Մ. Գորկու անվան հանգստի պարկում կայանալու է շախմատի միաժամանակյա խաղի սեանս. խաղալու է շախմատի աշխարհի չեմպիոն Միխայիլ Բոտվիննիկը՝ միանգամից 25 տախտակի վրա: Ցանկացողները կարող են ցուցակագրվել»:

Մի երկու րոպե Դիման չէր կարողանում կտրվել աֆիշից. ինչպե՞ս թե միաժամանակ 25 տախտակի վրա... Մի՞թե հնարավոր էր... Ա՜յ թե հետաքրքիր կլիներ դիտել... Տեսնես՝ ովքե՞ր կհամարձակվեն խաղալ չեմպիոնի հետ. հաջակավորնե՞ր էին լինելու նրանք, թե՞... Ոչ. ինչե՞ր է մտածում... ո՞վ կթողներ երեխաներին խաղալ նրա հետ: Իսկ եթե խնդրեր հայրիկին՝ իրեն էլ տանել այնտեղ և... և գուցե խնդրեին չեմպիոնին...

Ամբողջ օրը Դիման այդ մասին էր մտածում ու խոսում:

Երբ վերջապես հայրիկը տուն եկավ. ու բոլորը հավաքվեցին սեղանի շուրջը. Դիման չէր կարողանում տեղում հանգիստ մնալ. անհամբերությունից անընդհատ սրա-նրա երեսին էր նայում, վեր կենում տեղից:

—Ի՞նչ է պատահել, Դիմա. չլինի՞ դպրոցում անկարգություն ես արել,—նկատեց հայրը:

—Ո՛չ, հայրիկ. ի՞նչ ես ասում,—իրեն մի կերպ հավաքեց Դիման:—Ես ուզում եմ... ուզում եմ...

Եվ ցաք ու ցրիվ նախադասություններով, աստիկ հուզված, նա պատմեց այն ամենն, ինչով ապրել էր ամբողջ օրը, խնդրեց. թախանձեց, որ հայրիկն իրեն տանի, եթե ոչ մասնակցելու. գոնե տեսնելու այդ խաղը...

Հայրը մտահոգվեց. ինչպե՞ս վարվել... քայլեց սենյակի մի ծայրից մյուսը. ինքնիրեն մտածեց ու վճռական դարձավ տղային.

—Գնանք. տեսնել կարելի է. ի՞նչ կա որ...

Դուրս եկան տանից: Դիման վազում էր հոր կողքից, ուրախությունից կորցրել էր գլուխը: Իսկ հայրը, մեղմ ժպիտն աչքերին՝ քայլում էր, ձեռքին մի փաթեթ:

Հանգստի պարկում արտակարգ աշխուժություն էր տիրում այդ օրը: Հավաքվել էին մայրաքաղաքի շախմատի սիրահարները: Ակումբի մեծ դահլիճում շրջանաձև դասավորված էին 25 սեղան. յուրաքանչյուրի վրա մի-մի շախմատ իրենց ֆիգուրներով. ժամացույց:

Դեռ շուտ էր: Հենց որ դատարկ սեղանները տեսավ Դիման, իսկույն վազեց ու գրավեց կենտրոնական տեղերից մեկը: Գոնե մինչև խաղացողների գալը թող վայելեր այդ հաճույքը: Նրա դեմքը փայլում էր. այրվում վայելքից... Իսկ հայրը, իբր ոչինչ չնկատելով. անտարբեր ձևանալով դիտում էր պատից կախված նկարները:

Բայց ահա սկսեցին իրար ետևից հավաքվել խաղի մասնակիցները:

—Դե՛, բալիկս, ապա մի վեր կաց այստեղից,—Դիմային մոտեցավ մի երիտասարդ: Դիման ելավ տեղից ու շուրջը նայելով նստեց հաջորդ սեղանի առջև:

Սպասումը կարճ տևեց:

—Այս ինչո՞ւ ես նստել այստեղ, տղա՛ս,—նրան մոտեցավ մի պատկառելի տղամարդ, ակնոցների ետևից թեթևակի ժպտալով:—Այստեղ փոքրերի տեղը չէ:

Դիման վիրավորված ու դանդաղ ելավ տեղից և անհարմար վիճակը ծածկելու համար նստեց հաջորդ սեղանի մոտ: Մի՞թե, մի՞թե բոլորը վեր էին կացնելու իրեն:

Իսկ հայրը աչքի տակով հետևում էր, թե ինչպես

Դիման տեղը զիջելով մեծերին՝ անընդհատ իջնում է դեպի դահլիճի մուտքը: Ահա նա ուղղակի լցված՝ նստեց վերջին սեղանին՝ ձեռքերը տարածելով. կարծես ուզում էր պահել սեղանը: Նա անհամբեր նայում էր դռանը: Ո՞վ, էլի ո՞վ էր զբաղեցնելու այդ տեղը: Եվ չուշացավ այդ մեկը: Ներս մտնողը մոտեցավ Դիմային.

—Դե, փոքրիկս, թույլ տուր գրավել տեղս... Գրոսմայստեր Բոտվիննիկը գալիս է:

Ամեն ինչ խառնվեց Դիմայի հոգում: Ամենից շատ հիմա վախենում էր լացից... ահա ուր որ է կթափվեն արցունքները...

Պայթած ծափահարությունը նրան սթափեցրեց: Ծեմքին երևաց Բոտվիննիկը: Դիման հմայված նայում էր նրան: Ահա թե ինչպիսին էր նա, որին երազում էր տեսնել: Միջահասակ էր նա, գեր: Ակնոցների միջից լուրջ նայում էր հավաքվածներին: Նա ողջունեց հանդիսականներին, խաղի մասնակիցներին, որոնք հոտնկայս դիմավորում էին իրեն:

Խաղի մասնակիցները լուռ ու լարված դասավորում են ֆիգուրները:

Դիմայի հայրը մոտեցավ Բոտվիննիկին. ծանոթացավ ու մի կողմ քաշելով՝ ինչ-որ բան սկսեց բացատրել: Դիմայի սիրտը սկսեց խփել. ի՞նչ էր ասում հայրը, դե, իհարկե, իր մասին էր խոսքը: Հանկարծ Բոտվիննիկի դեմքը պայծառացավ: Նա շրջվեց ու նայեց մի կողմ քաշված, հուզված Դիմային, ապա ասաց.

—Խնդրե՛մ, խնդրե՛մ, հաճույքով...

Մինչ Դիման կհասկանար, թե ինչ է սպասում իրեն, հայրը մոտեցավ ու Դիմային նստեցրեց մի սեղանի առաջ, որը կարծես հենց այդպիսի պատահարի համար էր դրված դռան մոտ, բացեց ձեռքի փաթեթը, հանեց տնից բերած շախմատը:

—Դե, սիրելիս, գրոսմայստերը համաձայնվեց խաղալ քեզ հետ, չհուզվես,—իր հուզումը զսպելով ասաց հայրը:

—Ինչպե՞ս թե... ուրեմն ե՛ս... ե՛ս էլ...

— Այո՛, խաղում ես... տես, որ ամոթով չմնաս...

Դիման, որ ուրախությունից պատրաստ էր թռչկոտել, համբուրել հորը, վերջին խոսքերից հասկացավ դրության լրջությունը և սկսեց արագ-արագ դասավորել ֆիգուրները: Նրա փոքր ձեռքերն ուղղակի դողում էին:

Մինչ այդ՝ Բոտվիննիկը հերթով մոտենում էր խաղի մասնակիցներին, մեկի մոտ կատարում էր քայլը, անցնում մյուսին, թողնելով, որ առաջինը մինչև իր վերադարձը լավ մտածի հաջորդ քայլի մասին: Ահա, ահա նա, իր խոստման համաձայն՝ մոտեցավ նաև Դիմային:

Կատարելով իր առաջին քայլը՝ չեմպիոնը հեռացավ: Դիման խորասուզված խաղի մեջ, մտածում էր պատասխանի շուրջը: Դահլիճում կատարյալ լռություն էր: Անցան րոպեներ, թերևս՝ ժամեր: Չեմպիոնին տարվող խաղակիցները կամաց-կամաց սկսում էին հեռանալ սեղանից: Բոտվիննիկն արդեն գնալով ավելի շուտ-շուտ էր հայտնվում Դիմայի մոտ և սկսում էր քայլն անելուց առաջ նույնիսկ մտածել: Խաղը հետաքրքրում էր նրան: Բոլորովին չէր սպասում, թե այդ փոքրիկն այդքան տրամաբանել ու ճիշտ պատասխաններ կարող է տալ:

Ելան և մնացած պարտվածները կամ ոչ ոքի արածները ու հավաքվեցին վերջին սեղանի շուրջը, ուր նստել էին չեմպիոնն ու Դիման: Դիման զգում էր, որ բոլորին հետաքրքրում է իր խաղը: Ակնոցավոր քեռին անհամբերության շարժումներ էր անում, տարուբերում գլուխը: Դիման այլևս չնայեց նրան: Գլուխը հակած հետևում էր յուրաքանչյուր քայլին:



Այո, այդ մեկը շատ լավ էր...

Ասացին, հիանալի պատասխան,— այս ու այն կողմից լսվում էին շրջապատած քեռիների հավանությունները։

Բոտվիննիկը լուռ շարունակում էր մտածել։ Խաղը երկարում էր, իսկ պատասխանն՝ ուշանում։ Դիման սպասում էր։ Նրա սիրտն ուռչում էր հաճույքից։ Ինչքան գնում, այնքան չեմպիոնն ավելի էր մտածում։ Դրությունը շատ լուրջ էր։ Ելք չկար։ Վերջապես Բոտվիննիկը նայեց ժամացույցին.

Դե, ի՞նչ արած, փոքրիկս, ժամանակը սպառվել է... շատ լավ ես խաղում, այսպես, արի ոչ-ոքի անենք,— ոտքի ելնելով ու ժպտալով ասաց Բոտվիննիկը։ Փոքրի՛կ շախմատիստ։

Մինչ քեռիները խրախուսում էին Դիմային չըհանձնվել, Բոտվիննիկն արդեն հրաժեշտ էր տալիս մյուս խաղակիցներին։ Տարված քեռիները հիացած ու ներքին նախանձով նայում էին փոքրիկ շախմատիստին։

Այսպես, տղա՛ս, դուրս գալիս Դիմայի ուսերը գրկեց հայրը,— ամոթով չարիր։ Գիտե՞ս ինչ ասաց քո մասին չեմպիոնը։ «Երբ ձեր որդին այդպես շարունակի, լուրջ հակառակորդ կարող է լինել։ Նրա հետ խաղալիս չի կարելի լուրջ չմտածել»։

Դահլիճում հավաքվածները ծափահարեցին Դիմային և մեծ հաջողություններ ցանկացան։ Իսկ Դիման երջանկությունից իրեն կորցրած՝ քայլում էր հոր կողքից։

Այդ օրվանից Մոսկվայի № 553 դպրոցում, որտեղ սովորում էր Դիման, նրան սկսեցին անվանել «Փոքրիկ շախմատիստ», ինչպես ասել էր գրոսմայստեր Բոտվիննիկը։




ՅԱՆԻՆԱ ՊՈՌԱԶԻՆՍԿԱՅԱ

Նկ. ԻՌԵՆԱ ՋԱՌՆԵՑԿԱՅԻ

*Բալբինան իր ծնողների մինուճար դուստրն էր, գեղեցիկ-ճմլիկ մի աղջիկ։ Բոլորը սիրում էին Բալբինային, սիրում էին ու սրտի ուզածն անում։ Ինչ էլ որ ցանկանար Բալբինան, իսկույն ևեթ կունենար։*

*— Ես ագռավ եմ ուզում,— ասում է մի անգամ նա։*

*— Ագռա՞վ,— զարմանում է մայրը։*

*— Ագ-ռա՜վ...*

*Հայրիկի շունչը կտրվում է զարմանքից, բայց դե, ինչ արած, հովանոցն առնում է ու վազում կենդանաբանական այգի։ Մի ժամ չանցած՝ ագռավն արդեն Բալբինայի ձեռքին էր։ Այդ ագռավը գուցե և շատ գեղեցիկ էր եղել ժամանակին, բայց հիմա նա ծեր էր, գլուխը՝ ճաղատ, պոչն էլ՝ ծուռ, Բայց դե, նա շատ բարի էր և ագռավի ամբողջ հոգով սիրում էր Բալբինային։*

*Մի առավոտ, չնայած օրն արդեն բացվել էր, Բալբինան խոր քնի մեջ էր, երբ մեկ էլ՝ ը՜րղ՜ղ, ու մի ճանճ եկավ նստեց աղջկա գլխին։*

*— Ես չեմ թողնի, որ ճանճը ուտի իմ Բալբինային,— բղավեց ագռավը, որ միշտ Բալբինայի մահճակալի ծայրին կուչ եկած՝ ննջում էր իր համար,— ասաց ու թռավ բարձի վրա և ամբողջ ուժով կտցահարեց ճանճին։*

*— Ա՜հ, այս ի՞նչ էր,— Բալբինան ձեռքը տարավ քիթը և վախեցած վեր ցատկեց տեղից։ Նրա քթիկը սկսեց ուռչել։*

*Բալբինան քթին սառը թրջոց դրեց, իսկ ագռավը նայեց նրան ու միտք արեց. «Ի՞նչ զարմանալի մոդաներ ունեն մարդիկ։ Քթի վրա էլ այդպիսի մեծ ժապավե՞ն»։*

*Մի օր Բալբինան նստել էր լուսամուտի առաջ ու զուլպա էր գործում։ «Ագռավիկ,— ասաց նա,— ես շատ եմ տխրում առանց քեզ, եկ նստիր մոտս»։*

*Ագռավը թռավ լուսամուտի գոգը։ Նրան շատ էր դուր եկել կարմիր կծիկը։*

*— Այդ ի՞նչ գեղեցիկ գնդակ է, ես հիմա մի*

քիչ կպտտեմ այդ գնդակը և կզվարճացնեմ Բալբինային։

Եվ ահա նա պտտում է գնդակը մեկ վերևից, մեկ ներքևից, մեկ վերևից, մեկ ներքևից... Օ՜յ, ինչ լավ խաղ է, մեկ վերևից, մեկ ներքևից, մինչև դեպի աջ և Բալբինայի ձեռ ու ոտը կապեց թելով։

— Վա՜յ, այս ի՞նչ է,— բղավեց Բալբինան։ — Հայրի՛կ, մայրի՛կ, հասեք, ես ավազակների ձեռքն եմ ընկել։ Ինձ պարանով կապեցին, օգնեցե՛ք, օգնեցե՛ք։

Լավ էր հայրիկն ու մայրիկը շուտ վրա հասան և ազատեցին Բալբինային։ Իսկ ագռավը սկսեց մտածել. «Բալբինան մաքրասեր աղջիկ է։ Շաբաթվա մեջ էլ, տոն օրերին էլ նա խնամքով լվացվում է։ Իսկ ե՞ս։ Ես ծխնելույզ մաքրողի պես սև եմ։ Ա՛յ, սեղանին աման է դրված, մեջն էլ ինչ-որ սպիտակ ջուր։ Գնամ մտնեմ սպիտակ ջրի մեջ, գուցե մեկից ձյան պես սպիտակ դառնամ։ Ասելն ու անելը մեկ եղավ։ Ցատկեց ամանի մեջ, թևերը թափ տվեց, լողացավ։ Այնքան հաճելի էր այն նրա համար, որ նույնիսկ աչքերը փակում էր։ Սպիտակ ջուրը սկսեց ցայտել չորս կողմ, մինչև առաստաղը և սկսեց կաթել հատակին։ «Այ, հիմա ես կուրախացնեմ իմ սիրելի Բալբինային»— մտածում էր ագռավը։

Բայց ահա ներս մտավ Բալբինան և զարմացած սկսեց բղավել. «Սա ի՞նչ բան է։ Ա՜խ, ագռավն է կաթի ամանի մեջ մտել։ Հապա հիմա ի՞նչ պիտի ուտենք»։

Մի անգամ Բալբինան նստած մտածում էր. «Այսպես էլ անարդարությո՞ւն լինի, քաղաքում դեռ ոչ ոք չգիտի իմ ագռավի մասին։ Փողոցներում ձիեր են, որ վազ են տալիս, կտուրներին ճնճղուկներ ու աղավնիներ են թռչկոտում, տրամվայներ, ավտոբուսներ են սլանում, իսկ իմ ագռավին ոչ ոք ուշադրություն չի դարձնում։ Պետք է ես վերջ տամ դրան»։

Եվ Բալբինան ագռավի վզին գունավոր ժապավեն կապեց։ Ինքը նույնպես ամենալավ շորերն



հագավ ու դուրս եկավ տանից։ Նրանք հպարտ-հպարտ սկսեցին քայլել փողոցում։

— Այս ես եմ, սա էլ իմ ագռավը,— շուրջը նայելով պարծենում էր Բալբինան։

Գնում էր Բալբինան մեծ-մեծ քայլերով, իսկ նրա հետևից դոփդոփում էր նրա ագռավը։

Խե՜ղճ ագռավ. ամեն ինչից վախենում էր ու ինքնիրեն մտածում. «Ամեն կողմից մեքենա է գալիս։ Զանգեր, սուլոցներ, ինչո՞ւ են բոլորն այսպես շտապում. մեկը՝ ձախ, մյուսը՝ աջ... Մի՞թե այդպիսի խաղ կա, որ մարդիկ խաղում են։ Ոչինչ չեմ հասկանում, միայն գիտեմ, որ գլուխս պտտվում է»։

Մեկ էլ դպրոցից մի խումբ տղաներ դուրս եկան։ «Տեսե՜ք, տեսե՜ք, ագռավ, է՜յ, ծիտիկ, պոչիդ կեսը որտե՞ղ ես թողել։ Վա՜յ, ինչ ծիծաղելի



է։ Ա՜յ քեզ խորամանկ։ Քը՜շ, քը՜շ, անտառ գնաս»— բղավում են տղաները, աղմկում։ Ագռավը վախեցավ ու թը՜ռռ... թռավ վեր։ Այսպես ագռավը փախավ Բալլինայի ձեռքից։ Հիմա ի՞նչ անի։ Թռչում է, թռչկոտում է մայթի վրա, աղմկում, կչկչում... Մեկ էլ՝ հո՛պ. գլխով խփում է ինչ-որ գունավոր գնդակի. «Սա ի՞նչ բան է. ինչ-որ անհայտ թշնամի։ Գուցե դա կվախեցնի իմ սիրելի Բալլինային։ Ե՜յ, չվախենա՛լ, առա՜ջ թշնամու վրա։ Կը՛չ-կը՛չ...» և ագռավը ցած իջավ։



Նա սկսեց կտուցն ու եղունգները սրել, աչքերը սկսեցին վառվել։ Կռվել էր ուզում։ Ագռավը հարձակվեց փուչիկներ վաճառող տղայի ու նրա փուչիկների վրա։ Ա՜յ, արդեն ինչ-որ կտորտանքներ են թռչում օդում։ Խեղճ տղան բարձր ձայնով բղավում է ու խփում ամենավերջին փուչիկով։ Նա, ինչպես կարողանում է, պտտվում է ու չի խնայում. խփում է ձեռքի ձողիկով։ «Քը՜շ, թըռչնակ, քը՜շ. ագռավ»։ Եվ այսպես ասելով հասցնում ագռավի պոչին։ Խեղճ տղան հազիվ քշեց կատաղած ագռավին։

Փոքրիկ Բալլինան տանը նստած լաց էր լինում։

«Իմ սիրունիկ ագռավ, որտե՞ղ ես դու հիմա»— հենց այդ ժամանակ մեկ էլ թը՛փ. թը՛փ, ինչ-որ մեկը խփում է լուսամուտին.

«Այստե՞ղ է ապրում իմ Բալլինան, իմ սիրունիկ, փոքրիկ աղջիկը. ես արդեն երրորդ օրն է, փնտրում եմ նրան»։

«Ագռավիկ՛ս, ագռավիկ՛ս» ասաց Բալլինան ու պատուհանը բացեց։ Ուրախությունից նա մինչև անգամ լաց եղավ։ Այնքան մեծ էր նրա ուրախությունը, որ ասել չի լինի։

Վրա հասավ գարունը... հետո՝ ամառը։ Ամռանն էլ, ինչպես գիտեք, արձակուրդներ են լինում։

Եվ ահա Բալլինան գյուղ է գնում, իհարկե, իր սիրելի ագռավի հետ։

Մի օր էլ գյուղում, երբ շուրջն այնքան լուռ էր, անաղմուկ, որ թիթեռնիկի թռչելն անգամ կլսվեր, Բալլինան արևի տակ երկար խաղ անելուց հոգնած, քնեց ճոճանակի մեջ։

Ագռավն, իհարկե, մոտիկ էր նրան, ծառի ճյուղին։ Հանկարծ տերևները խշխշացին և մի ուրիշ ագռավ հայտնվեց։ Այդ ագռավը շուրջը նայեց ու ասաց. «Ես տեսնում եմ, որ իմ դեմ կրթված ագռավ է կանգնած, ինչպիսի՜ նուրբ շարժումներ, ինչպիսի հիանալի շարժուձև ունի նա»։

Մեր ագռավին շատ դուր եկավ անծանոթ ագռավը, նրա գլուխը պտտվեց. երեկոյան արդեն լավ մտերմացավ նորեկի հետ։



Ժամանակը շատ արագ էր անցնում գյուղում։ Փոքրիկ Բալլինան վազվզում, ցատկոտում էր ամբողջ օրը։ Ագռավին նա մի քիչ մոռացել էր, իսկ ագռավն էլ առավոտվանից մինչև երեկո զբաղված էր իր համար։

Ձողիկներ, չոր տերևի կտորտանք, մամուռ, ձիու մազ ու փետուրներ էր բերում նա, նույնիսկ իր կրծքից բմբուլներ էր պոկում, չնայած կուրծքը ցավում էր։ Եվ այսպես, ագռավի հետ նրանք բարդու վրա բույն շինեցին։

Բնի մեջ փոքրիկ ձվեր հայտնվեցին, հետո փոքրիկ թռչնակներ։ Ագռավը նրանց համար որդեր էր բերում, որ ուտեն։ Բայց ամբողջ ժամանակ նա ոչ միայն իր ընտանիքի մասին էր մտածում, այլև Բալլինայի։ Բայց Բալլինան արդեն պետք է քաղաք վերադառնար։ Նա չգիտեր, որ ագռավը ընտանիքի տեր է դարձել։ Աղջիկն իր փոքրիկ ճամպրուկի մեջ տեղավորեց շորերը, ագռավին

Թաքցրեց ձեռքի կողովի մեջ և գլխից դուրս հանեց:
Բայց քանի՛ որ դուրս գնաց, որ ագռավն ընտանիք է ստեղծել իր համար,՝ ուրախ և չէր զարմանա, որ նա հանդգնեց այդպես վարվել:
Իր սրտի ձայնին լսելով նա կողովի մի կողքից ծակ բաց արեց ու, փախչելով Բալբինայից, շտապեց ինչքան կարող էր շուտ հասնել իրենց բարդու ծառին եվ ինչպե՞ս ուրախացավ, երբ նորից տեսավ իր ձագուկներին:
Օրերը շուտ-շուտ էին անցնում: Անցավ մի շաբաթ, հետո՝ երկրորդ շաբաթը, հետո՝ երրորդը: Սեպտեմբերի արագ էր անցնում ժամանակը: Ագռավի ձագերը սկսեցին թռչել, իսկ ինքը՝ մեծ ագռավը հիշում էր Բալբինային ու տխրում նրա համար:
Վերջապես նորից ագռավը մի օր ասաց. «Ես տեսնում եմ, որ ուրիշ ելք չկա, դու, ամուսինս, տխրում ես, կարոտել ես գժգունել է: Եվ որոշեցի, չնայած ես քաղաք չեմ սիրում, բայց ոչինչ, փոխադրվենք այնտեղ»:
Իսկ Բալբինան այդ ժամանակ արդեն դպրոց էր գնում: Դասամիջոցներին երեխաները աղմկում էին, խաղում, միայն Բալբինան էր, որ նստած նամակ էր գրում»
«Ես այստեղ ապրում չունեմ: Ինչ կլինի հետո՝ ես չգիտեմ: Շուրջս ամեն ինչ ձանձրալի է, տխուր, ես չեմ ուտում, չեմ քնում, դու ինձ զգեստ եմ...» գրում էր Բալբինան ու չգիտեր, որ այդ ժամանակ ագռավի ամբողջ ընտանիքը պտտվում էր քաղաքի մեջ: Ճըչ... ճըչ... ամպերի տակ լսվում էր նրանց թևերի թափոցը: Դոփ-դոփ-դոփ, դոփդոփում էին նրանց տոտիկները մայթերի, ճանապարհների վրա:
Եվ ահա, այն ժամանակ, երբ Բալբինան իր արցունքներով երկրորդ թամակն էր լցնում, դուռը լայն բացվեց, և ներս մտավ ագռավը: Նրա հետևից ներս մտան մյուս ագռավն ու ձագուկները:
Ինչպիսի՜ ուրախություն, ինչպիսի՜ մեծ աղմուկ բարձրացրին այդ անսպասելի հյուրերը: Այդ օրվանից նրանք բոլորը սկսեցին միասին ապրել:
Չնայած տեղը նեղ էր, բայց նրանց սրտերը լայն էին:








Բաժինը վարում է պրոֆեսոր ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

## ՍՏՈՐԵՐԿՐՅԱ ԽՌԱՑՐԱԾ ՋՐԵ՞Ր

Ձեր կարծիքով էներգիայի աղբյուրներից ո՞ր տեսակն է գրավում առաջին տեղը: Գուցե կասեք քարածո՞ւխը, նա՞վթը, թերթաքա՞րը կամ ատո՞մը: Ո՛չ: Երկրագնդի կեղևի տակ եռացրած ջրերի ծովեր ու օվկիանոսներ կան թաքնված, և հենց սրանք էլ պատկանում է առաջին տեղը: Բավական է մինչև երեք հազար մետր խորությամբ մի անցք բաց անել, որպեսզի այդ անսպառ էներգիայի հոսանքը ուժգնորեն դուրս ժայթքի գետնի տակից: Անսպառ ենք ասում, որովհետև երբեվէ կարող են վերջանալ քարածուխ, նավթի, ուրանի հանքերը, քամին կարող է մեկ փչել, մեկ էլ դադարել, գետերը կարող են փոխել իրենց ուղղությունը կամ ցամաքել, բայց ստորերկրյա ջրերը չեն սպառվի տասնյակ ու հարյուրավոր սերունդներ հետո: Մինչև երկու հարյուր աստիճան եռացրած այդ ջրերը սեղմված են մի քանի տասնյակ մթնոլորտային ճնշման տակ, և երբ դուրս են ժայթքում գետնի տակից, ընդունակ են անվերջ պտտեցնելու էլեկտրակայանի շարժանիվների թիակները:
Բայց սա բոլորը չէ: Ստորերկրյա ջրերի մեջ կան բազմապիսի քիմիական տարրեր ու աղեր՝ յոդ, բրոմ, բորաթթու, ինչպես նաև հելիում, ածխաթթու և դյուրավառ գազեր: Ջերմությունից բացի, քիմիական ձեռնարկությունները կունենան անվճար հումքի մշտական աղբյուր: Այդ ջրերը պիտանի կլինեն տարբեր տեսակի ծանր հիվանդությունների բուժման համար:
Կարևոր է նաև մի ուրիշ հանգա-

մանք: Այն քաղաքները, որ կսկսեն օգտագործել ստորերկրյա ջրերի էներգիան, գրեթե լրիվ կմաքրվեն մրից ու փոշուց: Միաժամանակ խողովակները այլևս օդի մեջ բաց չեն թողնի վառելանյութի լրիվ չայրված մասնիկներ: Ջերմոցներում և ապակեծածկ այգիներում հնարավորություն կստեղծվի տարվա բոլոր եղանակներին ունենալ թարմ միրգ, բանջարեղեն ու կանաչեղեն: Եվ վերջապես, տրանսպորտը կազատվի ավելորդ բեռնվածությունից, նավթ և վառելափայտ տեղափոխելուց: Իսկ դա միլիոնների հասնող օգուտ կբերի:

Ահա թե առաջին հերթին ինչ օգտակար գործ կարող են կատարել ստորերկրյա բնական ավազանները:

Այժմ, երբ ստեղծված են սովետական հզոր հորատիչներ, հազարավոր մետր խորության անցքեր կարելի է բաց անել 2-3 շաբաթվա ընթացքում: Մի քանի այդպիսի հորից դուրս



եկող էներգիան կբավարարի մի ամբողջ քաղաքի: Տաք ջրերի գետերը կհոսեն խողովակներով, կխփեն ջրանիվների թիակներին ու հոսանք կտան: Հետո կվազեն բնակարաններում հարմարեցված խողովակների միջով ու կտաքացնեն սենյակները, կլցվեն բաղնիքներն ու լվացքատները: Մի՞-թե հնարավոր է բոլորը թվարկել:

Վերջին տարիներին կատարած հետազոտությունները ցույց են տվել, որ մեր երկիրը ստորերկրյա ջերմության շատ հարուստ պաշարներ ունի: Չկա մի վայր, որտեղ հայտնաբերված չլինեն ստորերկրյա տաք ջրեր: Որքան խորն են այդ ջրերը, այնքան ջերմաստիճանը բարձր կլինի: Հանքային տաք ջրերով հատկապես հարուստ են Կրասնոդարի երկրամասը, Կովկասը, Կուրիլյան կղզիները, Ղրիմը: Արևմտյան Սիբիրում բացված է արտեզյան մի հսկայական ավազան, որը գրավում է տասնյակ հազարավոր քառակուսի կիլոմետր տարածություն:

Պետք է իմանալ, որ ստորերկրյա տաք ջրերի օգտագործման տեսակետից ամբողջ աշխարհին օրինակ է ցույց տալիս փոքրիկ Իսլանդիան: Մայրաքաղաքում գրեթե չեն օգտագործում քարածուխ ու նավթ: Նրանց ջերմոցներում հասունանում են ոչ միայն բանջարեղեն ու մրգեր, այլև մանդարին ու կիտրոն: Ստորերկրյա բնական էներգիայից այժմ օգտվում են նաև Իտալիայում:

Ստորերկրյա տաք ջրերի առաջին էլեկտրակայանը մեր երկրում կառուցվում է Կամչատկայում:

Ամենահայտնի հանքային աղբյուրներից մեկն էլ մեր Ջերմուկն է: Բարձր լեռնային այդ վայրում վառելանյութ տեղափոխելը շատ թանկ է նստում: Բացի այդ, ցրտերն ընկնելուն պես՝ սանատորիայում կյանքը դադարում է: Դրա համար էլ որոշված է Ջերմուկը տաքացնել հանքային ջրով, որպեսզի սանատորիան գործի տարվա բոլոր եղանակներին: Նույնը կկատարվի Կիսլովոդսկում, Ժելեզնովոդսկում, Ղրիմում, Ստավրոպոլում և այլ վայրերում:

Շատ տարիներ չեն անցնի, և ստորերկրյա տաք ջրերը լայնորեն կօգտագործվեն մեր երկրի բազմաթիվ քաղաքներում:



## ԱՆՁՐԵՎ ԳԵՏՆԻ ՏԱԿ

Ամառային արևը այրում է անխնա կերպով, և փչում են տոթակեզ քամիները: Գետինն այնպես է չորացել, որ ծածկվել է խոր-խոր ճեղքվածքների խիտ ցանցով: Խոնավության պակասից բույսերը կախել են տերևները:

Այնտեղ, որտեղ մոտերքում ջուր կա, մարդիկ ջրում են հողը: Հապա փորձեք հագեցնել տոչորված հողն ու բույսերը, երբ մոտերքում չկան գետեր ու ջրամբարներ:

Բայց երբ հողը երեսից են ջրում, բացասաբար է ազդում բույսերի վրա: Այդ դեպքում հողի վերին շերտը ամրանում է և թույլ չի տալիս, որ օդ անցնի ներքևի շերտերը: Բացի այդ, նպաստավոր պայմաններ են ստեղծվում մոլախոտերի ու վնասատուների զարգացման համար:

Դրա համար էլ գիտնականները վաղուց աշխատում են գտնել ոռոգման այնպիսի եղանակ, որ խոնավությունն անմիջապես հասնի արմատներին:

Մի անգամ սովետական գիտնականներ պրոֆեսոր Ն. Խոլինը և ինժեներ Գ. Շենդրիկովը ստեղծեցին ստորգետնյա ոռոգման շատ պարզ հարմարանք: Դա սովորական ջրատար խողովակի մի կտոր է,

որի ծայրին ամրացված կցուկը ավտոմատ կերպով գործող փակաղակ ունի: Շլանգի մի ծայրը միացվում է խողովակի վերին մասին, իսկ մյուսը՝ ջրամբարին կամ ջրկիր ավտոմեքենայի ծորակին: Ջուրը գործի է գցում փակաղակը, որը և սկսում է փորել գետինը: Մարդը թեթևակի



սեղմում է խողովակը, և փակաղակը մի քանի վայրկյանում մինչև մեկ մետր իջնում է հողի տակ, միաժամանակ ջրելով ներքևի շերտերը:

Անցած տարի Ղրիմում երաշտ էր: Ավելի քան 15 հազար հեկտար խաղողի մատղաշ վազեր չորացման վտանգի տակ էին: Սովորական եղանակով ջրելու դեպքում ամեն մի հեկտարի վրա կպահանջվեր ծախսել ամենաքիչը 500 — 800 խորանարդ մետր ջուր: Բայց որտեղի՞ց...

Ջրկիր ավտոմեքենաները սկըսեցին հեռավոր տեղերից ջուր տեղափոխել խաղողի այգիները: Ծորակներին միացված շլանգների և ստեղծված հարմարանքի օգնությամբ՝ սկսեցին 60 սանտիմետր խորությամբ ջուր հասցնել արմատներին: Մի քանի օր հետո խաղողի վազերը նորից կենդանացան և տերևները ուղղեցին: Խաղողի այգիները ոչ միայն փրկվեցին երաշտից, այլ սկսեցին արագորեն աճել և փարթամանալ:

# ՃԱՍԱՆԾ

## ՍԱՏԱՆԱՆ ՈՒ ԽՈՐԱՄԱՆԿ ԳՅՈՒՂԱՑԻՆ

*(Հեքիաթ-խնդիր)*

*Հնում լեռներում, իր շքեղ ապարանքում ապրում էին դևն ու նրա ծառան՝ սատանան: Մոտակա գյուղի բնակիչները պարտավոր էին ամեն օր մի մարդ տալ, որ դևը ուտի: Սատանան հերթական զոհին կանգնեցնում էր ապարանքի առաջ ու ասում.*

*—Ահա քեզ 17 փակ դուռ: Ես ու դու պետք է հերթով բացենք դռները: Ամեն մեկս իրավունք ունի միանգամից բացել մեկ, երկու կամ երեք դուռ, ինչպես կցանկանա: Եթե վերջին դուռը դու բացես, դևը քեզ կուլ կտա, իսկ եթե ես բացեմ, ինձ կուլ կտա ու շունչը կփչի:*

*Սարսափած գյուղացիները շատ էին գլուխ կոտրում, ոչ մի կերպ չէին կարողանում լուծել սատանայի խնդիրը:*

*Գյուղում ապրում էր մի խելոք ու աղքատ մարդ: Երբ հերթը նրան հասավ, նա սատանային ասաց.*

*—Շատ մարդկանց ես խաբել, բայց ինձ չես կարող:*

*— Հա՛, հա՛, հա՛, — ծիծաղեց սատանան:*

*—Առաջինը դու սկսիր,—առաջարկեց գյուղացին:*

*Սատանան սկսեց, ու նրանք, հերթով բացելով դռները, առաջ գնացին: Սկզբում սատանան ձեռ էր առնում գյուղացուն, բայց մեկ էլ հանկարծ գույնը գցեց. վերջին փակ դուռն էր մնացել, իսկ բացելու հերթն իրենն էր: Նա բացեց դուռը, դևը նրան կուլ տվեց և շունչը փչեց:*

*Դե, երեխանե՛ր, այստեղ էլ հեքիաթը վերջացավ: Հիմա ինքներդ գտեք դռները բացելու գաղտնիքը:*

Առաջարկ՝ Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐ




*Լրացրեք այս հարցերի պատասխանները: Ճիշտ լրացնելուց հետո նույն բառերը կկարդացվեն նաև ուղղահայաց շարքերում:*

*1. Քաղաք Իրանում: 2. Գետ Հնդկաստանում... (sic) 2. Գետ Հնդավոր Արևելքում: 3. Պետություն Ամերիկայում: 4. Գետ ՍՍՌՄ-ում:*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ

*100-ը բաժանել չորս այնպիսի մասերի, որ եթե առաջին մասին գումարենք 4, 2-րդ մասից հանենք 4, 3-րդ մասը բազմապատկենք 4-ով և 4-րդ մասը բաժանենք 4-ի, միշտ ստանանք միևնույն թիվը:*

Առաջարկ՝ ՎԱՐԴԳԵՍ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

## Պատասխանում ենք

*«ՊԻՈՆԵՐ № 8»*

ՈՒՇԱԴԻՐ ԵՂԵՔ — մեկ և երեք խաչով նշվածները ափվում են 4-ական հարի հետ, իսկ երկուսով նշվածը՝ հինգի հետ:

ՀԻՆԳ ՀԱՐՑ—1. Լողանալու են եկել նաև գյուղի երեխաները. նրանց շորերը երևում են գետի մյուս ափին: 2. Նավակը լողում է հոսանքին հակառակ. դա երևում է ծրկնոսի կարթի թեքվածությունից: 3. Գյուղը մոտիկ է, հանի որ կինը եկել է լվացք անելու: 4. Իմանալով գետի հոսանքի ուղղությունը, կարելի է ասել, որ գյուղը ձախ ափին է: 5. Առաջին հերթի երեխաներն են, հանի որ ջոկատավարի ձեռքի յասամանը ցույց է տալիս, որ ամառը նոր է սկսվել:

ՃԻ՞ՇՏ Է ԱՐԴՅՈՔ—Երբ պապը 50 տարեկան լինի, ապա նա ուղիղ 600 անգամ մեծ կլինի իր մեկ ամսական թոռից:

ՈՐՈՇԵՔ ԱՐԱԳՈՒԹՅՈՒՆԸ. — Մեքենան գնում է 55 կմ. արագությամբ: Երկու ժամ հետո հաշվիչը ցույց կտա 16061 թիվը:

ՆԱՎԱԿԻ ՔԱՅԼԵՐՈՎ. —Այս նաև երեք այլ լուծում:




ՊԻՈՆԵՐ

Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Լենինի ոսկը ցավում է— Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . .
2. Մենք ենք ենք գալիս...— Մ. ԿՈՐՅՈՒՆ . . . . . 2
3. Փարակածիններ— Մարկ Ստեփանյան— Վ. ԲԵԼՅԱԵՎ . . . . . 3
Բաանվեց էին— Հ. ՀԱԿՈԲՅԱՆ . . . . 7
Բոլշևիկների անմահությունը —Վ. ԳՈՒՍԵՎ . . . 8
4. Պստիկ խոստիկի և Երկար Մակարի արկածները Զարոց լեռան լանջին— Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ . . . 9
5. Մի Պիոների— Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ 11
6. Չի՞ լինի չգա անձրևը այդ գիծ Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . 11
7. Փոքրիկ օախմատիստը— Վ. ՀՈՎՀԱՆՆԵՍՅԱՆ . . . 12
8. Բալլինան ու ազռավը— Ց. ԳՈՐՈՂԻՆՍԿԱՅԱ . . 14
9. Մեր ակումբը . . . . . . 17
10. Ժամանց . . . . . . . . 19
11. Մեր օրացույցը

Այս համարի հետ տրվում է ծրի հավելված հոկտեմբերիկների համար

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲՈՒԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки. № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 06691. Պատվեր 823. Տպաքանակ 6000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/VIII 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.



# ՏԵՐԵՎԻԿ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



— Ի՛մ տերևիկ, այդ որտեղի՞ց
Եկար այդպես, քամու թևով,
Հագած շորեր կարմիր-դեղին,
Պար ես գալիս հազար ձևով:

Արի տանեմ, ի՛մ սիրունիկ,
Կախ տամ քեզ մեր ծառի ճյուղից,
Այնտեղ երբեք չես թառամի,
Կկանաչես, կաճես նորից:

— Ձէ, մի՛ տանի, սիրուն աղջիկ,
Տե՛ս, գալիս են ցուրտ ու մշուշ,
Ծառ ու տերև, ծիլ ու ծաղիկ,
Պիտի թոշնեն՝ թե վաղ, թե ուշ:

Փոքրիկ ես դու ու չգիտես,
Որ աշունն է արդեն եկել,
Բոլորից շուտ, ահա ես քեզ
Նրա գալու լուրն եմ բերել:

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ




Խ. ԳՑՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Պարտեզում, առվի ափին դրված թախտի վրա խառնիխուռն ընկած էին Արայի խաղալիքները։ Այստեղ խորանարդներ կային, գնդակներ, մի գուտապերչե շնիկ, միայն ոչ թե Քոթոթի նման սպիտակ, այլ՝ սև, հետո «Մոսկվիչ» ավտոմեքենա կար և հայրիկի պատրաստած սայլակը, իսկ Ցողիկենց տնից Նունիկն էր հյուր եկել։

Բայց նորությունը քեռու նվիրած ինքնաթիռն էր։

Հրաշալի բան էր այդ ինքնաթիռը՝ գեղեցիկ, արծաթագույն թևեր ուներ, առջևում՝ երկու պտուտակ, տակը՝ երկու անիվ, իսկ ամենից լավն այն էր, որ վերևում երկու օղակ կար։

Օղակների միջով թել անցկացրին։ Արան թելի մի ծայրից բռնեց, Ցողիկը՝ մյուս։ Արան իջեցնում էր իր կողմը, ինքնաթիռը դեպի նա էր սահում, իսկ երբ բարձրացնում էր, ինքնաթիռը սուրում էր Ցողիկի մոտ։

Քոթոթն էլ էր հետաքրքրվել, բայց նրա համար նայելը քիչ էր։ Նա ուզում էր հոտոտել, իսկ Արան դեմ էր այդ բանին։

— Քոթո՛թ, — ասում էր նա, — սա ուտելու բան չէ, սա ինքնաթիռ է և, խնդրեմ՝ մի խանգարիր։

Հարևան բակից Գևորգը եկավ։

— Վա՜յ,— զարմացավ նա,— այդ ի՞նչ եք անում։

— Ինքնաթիռ ենք քշում,— հպարտ ասաց Արան։

— Կտա՞ս մի քիչ քշեմ։

— Չեմ տա, իմն է։

— Իսկ ես, հիշո՞ւմ ես, քեզ գնդակ էի տալիս։

Մայրիկը պարտեզ եկավ։

— Այդ ի՞նչ եք խոսում,— հարցրեց նա։

— Թող նա էլ խաղա։

— Չե՛մ տա, չե՛մ տա,— զայրացավ Արան, բռնեց դեպի իրեն թռչող ինքնաթիռը ու սեղմեց կրծքին։— Ի՛մն է։

Գևորգը լաց եղավ։ Մայրիկը նրան տարավ տուն։



— Բա ինքնաթիռը իմը չի՞, բա իմը չի՞,— վրա տվեց Արան։

— Քոնն է,— պատասխանեց մայրիկը։

— Գևորգն ուզում է քշի...

— Դու քշիր,— ասաց Արան Ցոլիկին։

Բայց Ցոլիկի լացն էլ էր գալիս.

— Էլ չեմ խաղում,— ասաց նա ու գնաց։

Արան ինքնաթիռը գրկած՝ տուն մտավ։ Գևորգը սեղանի մոտ նստած՝ խնձոր էր ուտում։

— Խնձո՞ր,— ուրախացավ Արան։

— Ձեռք չտաս, Գևորգինն է,— ասաց մայրիկը։

— Պահարանում էլի կա,— առարկեց Արան։

— Նրանք էլ հայրիկինն են։

Մայրիկը կարի մեքենան բերեց ու սկսեց կարել։ Ա՜յ լավ բա՜ն... Ձեռքդ դնում ես փոքրիկ բռնակին՝ չը՛խկ, չը՛խկ, չը՛խկ, անիվը պտտվում է։ Արան մոտ գնաց։

— Պտտե՞մ, մայրիկ։

— Չի՛ կարելի, իմն է,— ասաց մայրիկը։

— Պտտեմ, էլի...

— Ո՛չ։

Արան լացակումեց.

— Ինչո՞ւ չես տալիս, անիվը ջարդվո՞ւմ է։

— Քո ինքնաթիռն էլ չէր կոտրվի,— ասաց մայրիկը,— բայց դու Գևորգին չտվիր։

Արան գլուխը կախեց։ Նա ամաչում էր։

Քիչ հետո ինքնաթիռը քշում էին Ցոլիկն ու Գևորգը, իսկ Արան խաղում էր ուրախացած Քոթոթի հետ և իր հերթին սպասում, որ ինքնաթիռ քշի։

—Քոթո՛թ, ուզո՞ւմ ես՝ դու էլ քշիր,— սիրալիր ասում էր նա։



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

# Զարմանալի տիկնիկը





Վ. ՏԱԼՅԱՆ

Փիսոն խաղաց, թռվռաց,
Մեկ էլ պոչը կեռ արած՝
Քաշեց տիկնիկ Լորիկին,
Բամփեց գլխին, փորիկին,
Որ գա հետը խաղ անի,
Թե չէ քունը կտանի.
Իսկ Լորիկը նվնվաց,
«Մի՛... մի՛...» —արեց, ընկավ ցած:
Այս որ տեսավ փիսոն չար,
Վախից թողեց խաղ ու պար.
Տոտիկները դողացին,
Աչիկները շողացին,
Փախավ մտավ պահարան
Ու զարմացավ.— Ա՛յ քեզ բա՛ն...
Ի՞նչ եղավ որ... հո՛պ արի,
Թաթով միայն թը՛փ արի...
— Վա՛յ, սիրունիկ իմ կատո՛ւ...
Բա չգիտե՞ս այդքան դու.
Սա իմ խոսող Լորիկն է,
Նանիկ անող տիկնիկն է.
Կրծքի տակ մի բան ունի,
Թե ցած դնես, կքնի,
Թե վեր հանես, ձայն կտա,
Աչքերը բաց կժպտա... Բա՛...









Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ



# ՄՐՋՅՈՒՆԻ ԽՈՍՔԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի ժիր մրջյուն իր բեռան տակ,
Շտապում էր արագ-արագ.
Մեկ իջնում էր, մեկ բարձրանում,
Ո՛չ հոգնում էր, ո՛չ ձանձրանում...
Մի ծույլ տղա նայեց նրան.
Տեսավ ծանր բեռ կար վրան.
Ա՛յ քեզ հիմար,— ծույլը ասաց
Ու հռհռաց՝ բերանը բաց,—
Իր ուժից վեր բեռ է առել.
Ինքն էլ բեռին գերի դառել...
— Ա՛յ մեծախոս, ճամփեդ գնա,
Բեռս ծանր է, թող ինձ մնա;
Երբ մի ձմեռ քաղցած մնաս,
Ծանր ու թեթև նոր կիմանաս...

Մրջյունն ասաց, նայեց խեթ-խեթ,
Մտավ բույնը իր բեռան հետ։

# ԲԱԴԻԿՆ ՃՆՃԻԿԸ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



Ագահ բադիկը մի կճուճ գտավ,
Ու թաքուն-թաքուն նրա մեջ մտավ։



Իսկ տատիկը, որ չէր տեսել նրան,
Եկավ, կճուճը շուռ տվեց վրան։



*Մի աղվես ընկերներից ոչ մեկին չէր հավանում։ Նա օրվա մեծ մասը կանգնում էր գետի ափին, նայում ջրի մեջ արտացոլված իր պոչին, հիանում նրա գեղեցկությամբ։*

*— Արդյոք, կա՞ ինձ նման գեղեցիկ պոչ ունեցող ուրիշ աղվես, — ասում էր նա։*

*Մի ձմռան երեկո այս աղվեսը գնում է գետը ջուր խմելու։ Խմում է ջուրը և, երբ ուզում է ետ դառնալ, տեսնում է պոչի մազերը սառել, կպել են սառույցին։ Նա կանգնում, մտածում է. եթե քաշի, պոչի մազերը կպոկվեն, ինքը կայլանդակվի, ավելի լավ չի՞ լինի՝ սպասի մինչև լույս, սառույցը հալվի և անվնաս պոչով վերադառնա։*

*Առավոտյան դուրս է գալիս ձմռան արևը. աղվեսը սպասում է, սպասում, բայց սառույցը չի հալվում։ Արթնանում են մարդիկ, գնում գետը ջրի։ Երբ հեռվից նկատում են աղվեսին, վազում են նրա կողմը, շներին էլ մյուս կողմից քսի տալիս։ Աղվեսը սարսափում է, ուժ հավաքում, պոկում*



# …պոչը

պոչը և լեղապատառ ընկնում անտառ, ազատվում։ Գնում նստում է ծառի տակ, մեկ էլ զգում է, որ պոչը մրսում է։ Նայում է, ի՜նչ տեսնի. առաջվա գեղեցիկ պոչը ոչ մի մազ չունի։ Նա գրկում է պոչը և սկսում լաց լինել։ Նրա ձայնը լսում են անտառի աղվեսները և գալիս հավաքվում։ Տեսնելով աղվեսի վիճակը, ընկերները նրան տանում են խնամում, լավացնում։

Այդ օրվանից աղվեսը թողնում է պճնամոլությունը, իր պոչով հիանալը և ընկերների հետ լավ է վարվում։

Մշակեց Ա. ԱԴԱՄՅԱՆ





Շնիկի լեղին ջուր դառավ վախից,
Կճուճն ինքնիրեն շարժվում էր տեղից։



Մեկ էլ սիրտ առավ ու վազեց թափով,
Խփեց, կճուճը շուռ տվեց թաթով։



Եվ, ա՛յ քեզ հրաշք, երբ կճուճն ընկավ,
Միջից մի չաղլիկ բադիկ դուրս եկավ։

# Կենգուրուն ու ՓԻՂԸ

— Բարև,— ասաց մայր կենգուրուն,
Երբ մայր փղին հանդիպեց,—
Զամբյուղո՞վ ես որդուդ կրում,
Ի՞նչ է, թեթև՞ է այդպես։
— Շնորհակալ եմ,— ասաց փիղը,
Փղի-մայրիկը՝ հսկա լեռ։—
Ոչի՛նչ, թեթև է մանկիկս՝
Երևի փոքր է կշռում դեռ...



# Գոռոզ նապաստակը

ՖՐԱՆՉԵՍԿՈ ՋԻՋՈՆԴԱ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Կանաչ, ծաղկոտ մարգագետնում, վեհաշուք կաղնու ստվերում տեղավորվել էր աշխատասեր սկյուռիկների մի ամբողջ դասարան։ Նրանց ուսուցիչը, արդեն հասակն առած մի սկյուռ, նստած ետևի թաթիկների վրա, ասում էր.

— Կենդանիների մեջ սկյուռներս ենք բոլորից արագավազը...

Այդ ժամանակ նրանց կողքով անցնում էր մի նապաստակ։ Նրան դուր չեկան սկյուռի խոսքերը։

— Մի՛ հավատացեք նրան, տղաներ,— գոռաց նա,— այդ ամենը, ինչ ասում է ձեր ուսուցիչը, սուտ է։ Ամենից արագ վազող կենդանիները նապաստակներս ենք։ Տեսե՛ք։

Եվ նա սկսեց արագ վազել մարգագետնով։ Ապա մոտեցավ աշակերտներին, հպարտ կանգնեց նրանց առջև և հարցրեց.

— Դե, համոզվեցի՞ք։ Ճի՞շտ եմ։

— Դու, պարզապես, պարծենկոտ հիմար ես,— զայրացած պատասխանեց նրան ուսուցիչ սկյուռը,— մինչև վերջ չլսեցիր ինձ և կարծեցիր, թե ամեն ինչ հասկացել ես։ Դու ինձ անպատվեցիր և հիմարի պես սկսեցիր վազել մարգագետնով։ Ես ուզում էի ասել, որ մենք՝ սկյուռներս, բոլոր կենդանիներից ավելի արագ ենք բարձրանում ծառի գագաթը։ Եվ դա ճիշտ է, տե՛ս։

Ծեր սկյուռը մի ակնթարթում բարձրացավ հսկա կաղնու գագաթը և արագ վայր իջավ։

— Իսկ հիմա, քո՛ւյր նապաստակ,— ասաց սկյուռը,— տեսնենք, թե դո՞ւ ինչպես ես ծառ բարձրանում։

Բայց շլդիկը նույնիսկ չփորձեց էլ։ Նա ամաչեց և փախավ։ Բոլոր սկյուռիկները ծիծաղեցին։

Պետք է նախ և առաջ մինչև վերջ լսել խոսակցությունը և ապա ասել, որ հասկացել ես։

Իտալական «ՊԻՈՆԵՐ» ամսագրից



# Բադիկի ճանապարհորդությունը

Մի անգամ բադիկը որոշեց աշխարհ տեսնել ու դուրս եկավ ճամփորդության։ Գնաց, գնաց, հանդիպեց գորտին։

— Ու՞ր ես գնում, բադիկ քույրիկ,— հարցրեց գորտը։

— Աշխարհ տեսնելու։

— Ինձ էլ կտանե՞ս հետդ։



— Նստիր պոչիս՝ գնանք։

Գորտը նստեց բադիկի պոչին ու երկուսով շարունակեցին ճանապարհը։ Գնացին, գնացին, հանդիպեցին ջրաղացքարին։

— Ո՞ւր եք գնում։

— Աշխարհ տեսնելու,— պատասխանեցին բադիկն ու գորտը։

— Ինձ էլ կտանե՞ք ձեզ հետ։

— Նստիր պոչիս՝ գնանք,— ասաց գորտը։





Ծանր ջրաղացքարը նստեց գորտի պոչին, ու երեքով շարունակեցին ճանապարհը։ Գնացին, գնացին, հանդիպեցին քարածուխին։





— Ո՞ւր եք գնում,— հարցրեց քարածուխը։
— Աշխարհ տեսնելու,— պատասխանեցին երեքը միասին։
— Ինձ էլ կտանե՞ք ձեզ հետ։
— Նստիր պոչիս՝ գնանք,— ասաց ջրաղացքարը։
Կարմրաթուշ քարածուխը նստեց ջրաղացքարին, ու չորսով շարունակեցին ճանապարհը։ Քարածուխը շատ ուրախ ու երջանիկ էր զգում իրեն, որ աշխարհ պիտի տեսնի։ Գնացին, գնացին, հանդիպեցին մի գետի։ Այդ ժամանակ բադիկը լողանալ ուզեց, և երբ հասան ջրի մեջտեղը, ասաց.
— Ձեզ ամուր պահեք, ես ուզում եմ մի քիչ զովանալ։





Ասելն ու ջուրը մտնելը մեկ եղավ։ Հանկարծ ջրաղացքարն ու քարածուխը տեսան, որ սուզվում են։ Ջրաղացքարը ընկավ հատակին ու այլևս ոչինչ չէր տեսնում։ Քարածուխը թեև սկզբում մնաց ջրի երեսը, բայց անմիջապես կորցրեց իր երեսի կարմրությունը և սևացավ։ Հետո նա էլ սուզվեց ջրի հատակը։

Միայն բադիկն ու գորտը կենդանի մնացին, որովհետև լողալ գիտեին և մինչև այսօր էլ ծիծաղում են։

*Գերմանական «ԲՈՒՄՄԻ» մանկական հանդեսից*





Ալլա Եվանգուլյանն էլ այս տարի դպրոց գնաց. Նա դեռ տառերը նոր է սովորում: Առայժմ նա թերթում է «Պիոներ» ամսագրի պատկերազարդ հավելվածը և միայն նկարներին է նայում: Կանցնի էլի մի քանի ամիս, և Ալլան փոքրիկ գրքեր կկարդա:

*Լուսանկար Ա. ԴԵՆԻՍԵՆԿՈՎԻ*




## ՄՈՒՐԱՑԱՆ

Մի երիտասարդ շրջում էր հայրենի վայրերում: Նա տեսնում էր չքնաղ բնությունը, կանաչ սարերն ու անտառները, հին բերդերի և շինությունների ավերակները: Նրան հուզում էր ամեն մի քար, որի վրա դրոշմված էին ժողովրդի կատարած քաջագործությունների հետքերը: Նա հպարտանում և ակնածանքով էր թերթում նախնիների թողած հիշատակարանները: Նրա զգայուն սիրտը ամեն ինչից խորը տպավորվում էր: Չէ՞ որ նա սիրում էր այն բոլորը, որ կապված էին հարազատ ժողովրդի անվան հետ: Այս ճանապարհորդության արդյունքը եղավ մի աշխատություն, որը տպագրվեց այդ ժամանակվա ամսագրերից մեկում: Արդյոք հայրենիքի սերը չէ՞ր, որ որոշ ժամանակ անց, նույն երիտասարդին մղեց ստեղծելու իր առաջին գեղարվեստական երկը: Դա մի պիես էր «Ռուզան» անունով, որը մեծ փառք բերեց մինչ այդ անծանոթ հեղինակին: Հասարակությունը ներկայացման գիշերը առաջին անգամ լսեց այդ հեղինակի անունը՝ Մուրացան:



Մուրացանը իսկական հայրենասեր էր, նա հանձին Ռուզանի, ցույց էր տալիս խիզախության և անձնազոհության օրինակ:

Անձնազոհություն և նվիրվածություն հայրենիքին,—սա դարձավ խոշոր գրողի բոլոր գործերի ամենակարևոր հատկանիշը:

«Խորհրդավոր Միանձնուհին», «Նոյի ագռավը», «Առաքյալը» վեպերում մի՞թե գրողի հայրենասիրական ոգին չէր խոսում, մի՞թե նա երիտասարդությանը չէր կոչ անում նվիրվել ժողովրդին, դարմանել նրա վերքերը: Եվ, վերջապես, այդ խոր հավատով չէ՞ր գործում գրողի ամենասիրված հերոսներից մեկը՝ Գևորգ Մարզպետունին: Ամեն ինչ անել, եթե պահանջվի՝ նույնիսկ կյանքը զոհաբերել հայրենիքի համար,—այսպես էր մտածում Մուրացանը:

Դրա համար էլ նա գրել է. «Ամեն մի գործ ստեղծելու ժամանակ իմ աչքի առաջ ունեցել եմ հայ ժողովուրդը, նրա անցյալը, նրա պատմությունը, նրա տխուր ներկան, լավ եմ գրել, թե վատ, նրա համար եմ գրել, նրան եմ կամեցել իմ մտքերն ու զգացմունքները հաղորդել»:

Իրոք, իսկական գրողը չէր կարող անտարբեր անցնել ժողովրդին հուզող ցավերի կողքով, նա ի վիճակի չէր նրա թշվառության հանդեպ աչք փակել:

Մուրացանի գրվածքներից շատերը ապրեցին և կապրեն, որովհետև նրանց մեջ մեծ գրողի շունչ էր դրված: Այդ գործերն այսօր էլ հուզում են ընթերցողներին:

Ծանր է եղել Մուրացանի կյանքը: Նա ամբողջ օրը կատարում էր հաշվապահի սրտամաշ աշխատանքը, իսկ գրական գործով միայն ազատ ժամերին զբաղվում: Եվ այսպես շարունակ: Նա նույնիսկ կշռել է 15 տարվա ընթացքում գրած մատյանները: Դրանք տասներկու փութ են եղել: Պատկերացրեք, եթե նա կարողանար ստեղծագործել, ինչքա՜ն շատ բան կտար գրականությանը:

## Ի. Ս. ՏՈՒՐԳԵՆԵՎ

Իվան Սերգեևիչ Տուրգենևը մանկության տարիներն անցկացրեց իր մոր կալվածքում՝ Սպասկոյե Լուտովինովո գյուղում: Մայրը դաժան, բռնակալ կալվածատիրուհի էր: Ամեն մի դատարկ բանի համար ծեծել էր տալիս ճորտերին: Նրա ներկայությամբ բոլորը լուռ քայլում էին ոտնածայրերի վրա, որ տիրուհին չբարկանա: Իսկ տիրուհին ամեն մի չնչին առիթով բարկանում էր: Այդ միջավայրում էր մեծանում ապագա գրողը: Նա էլ էր դաժան մոր ձեռքով հաճախ պատժվում:

Վաղ մանկության տարիներին Տուրգենևն իմացավ, թե ինչ է ճորտությունը:

Տղայի առաջին դաստիարակները օտարներն էին: Բայց նա սիրով կապված էր իր մոր քարտուղարի՝ Ֆյոդոր Իվանովիչ Լոբանովի հետ: Լոբանովից նա սովորեց ռուսերենը, այն լեզուն, որը հետո մեծ գրողի գրչի տակ հրաշքներ էր գործելու: Այդ ժամանակ էլ նա սկսեց կարդալ ռուս գրականությունը:



Տուրգենևը լավ կրթություն ստացավ, երբ նրանց ընտանիքը Մոսկվա տեղափոխվեց: Բայց նրան ձգում էր գրականությունը: Նրա առաջին տպագրված գործը մի չափածո պատմվածք էր:

40-ական թվականների վերջին Տուրգենևը սկսեց պատմվածքներ գրել: Դրանց թեման վերցված էր ռուսական գյուղի կյանքից:

Ռուս հասարակ մարդիկ այդ գրվածքներում օժտված են խելքով, աշխատասիրությամբ, մեծ համբերությամբ: Բայց նրանք երբեք, նույնիսկ կյանքի ամենածանր պայմաններում, չեն կորցնում իրենց մարդկային արժանապատվությունը, հավատը լավ կյանքի նկատմամբ: Տուրգենևն ապացուցում էր, որ գյուղացին մարդ է և շատ բանով ավելի բարձր, քան նրանք, ովքեր նրա տերերն են:

Այդ պատմվածքները հրատարակվեցին առանձին գրքով, «Որսորդի հիշատակարանը» վերնագրով և մեծ հաջողություն ունեցան:

Տուրգենևը Գոգոլի մասին հոդված տպագրելու համար ձերբակալվեց: Նա բանտում գրեց «Մումու», որտեղ դատապարտում էր ազնվականական դաժան կարգերը: 50-ական թվականներից Տուրգենևը գրում է իր շատ հայտնի գեղարվեստական երկերը: Այդ երկերում նա վառ կերպով, ռեալիստական մեծ ուժով պատկերում է անցյալ դարի կեսերի ռուսական կյանքը:

Այս ամսին լրանում է մեծ գրողի մահվան 75 տարին:

# Ն Ե Ր Կ Ե Ց Ի . . .













Նկ. Գ. ՅԱՐՈՒԼՅԱՆԻ